# ԽԻԶԱԽ ՃԱՄՓՈՐԴՆԵՐ

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ



Գնում է ճամփան մոտով քարայրի,
Ծաղկունքն է բուրում եզրերին նրա,
Եվ անտառների նազանքը վայրի
Թափվում է կարծես ձորերի վրա։
Հեռվում արտերն են ծփում դեղնավարս,
Կարմիր ժպիտով նայում է մորին,
Վաղ լուսաբացին աղբյուրի մեջ պարզ
Տերև է գցում ծերացած լորին։
Օրը սուզվում է լույսի ոսկու մեջ.
Հայոց լեռներին ողջույն է ճամփում,
Իսկ արտույտները համերգով իրենց
Կարծես բնության հրճվանքն են թափում:
Գիշերից ծնված առավոտն է պաղ
Արևի ձեռքով շոյում ծառ ու թուփ,
Դեպի լեռներն է բարձրանում ուրախ
Պատանիների խնթուրախ մի խումբ։
Կեռման է տալիս շավիղը բարակ,
Զնգում է զվարթ զանգը մենության,
Երկնքով հարբած գնում են՝ նրանք,
Նայում գանձերին մեր մայր բնության։
Մի տեղ աղբյուրն է զնգոցով թռվում,
Մի տեղ՝ ծառն ուսին մամռապատ մի ժայռ,
Եվ մանուկներին այնպես է թվում,

# ՂԱՓԱՆ-ՔԱՋԱՐԱՆ

Ճանաչենք հայրենի երկիրը

Թ. Խ. ՀԱԿՈԲՅԱՆ

Պատմական գիտությունների դոկտոր

Ղափան և Քաջարան քաղաքները գտնվում են Սովետական Հայաստանի հարավ-արևելյան մասում, լեռնային ու կգալի մասով անտառածածկ Ղափանի շրջանում: Դրանք իրարից 30 կմ. հեռավորության վրա են, երկուսն էլ տեղադրված Ողջի գետի աջ ու ձախ ափերին:

Չնայած այդքան մոտիկությանը, Ղափանից մինչև Քաջարան ուղևորը կարող է տեսնել մի շարք հին ու նոր բնակավայրեր, արդյունաբերական օբյեկտներ, մի քանի բերդերի և Կապան քաղաքի ու Վահանա վանքի ավերակները:

Սկսենք մեր ուղևորությունը Ղափանից:

ՂԱՓԱՆԸ Հայկական հանրապետության Ղափանի շրջանի կենտրոնն է, պղնձարդյունաբերության նշանավոր քաղաք: Գտնվում է Ողջի գետի միջին հոսանքում և մի առանձին գծով կապված է Երևան-Բաքու երկաթուղու հետ: Ղափանի կլիման տաք ու բավարար խոնավ է: Ձմեռն այստեղ սառնամանիքներ քիչ են լինում, իսկ ամառը հաճախ տոթ է լինում: Քաղաքը տարածված է Ողջի գետի և նրա մեջ թափվող Կավարտ ու Վաչագան գետակների հովիտներում: Քաղաքի շրջակայքի լեռները բուսածածկ են, շատ տեղերում՝ անտառապատ:

Ղափան քաղաքի և նրա մոտակայքի բանավաննե-

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ




Լույս է տեսնում 1923 թվականից

№ 7 ՀՈՒԼԻՍ 1966 թ.

Թե կանաչ ճամփան չունի վերջ ու ծայր։
Ելնում են նրանք անտառի փեշով.
Բարձր կանչում է մեկը մյուսին,
Նստել է կարծես ճերմակ մշուշով
Կապույտ երկինքը լեռների ուսին։
Գնում են գնում ու նայում ծորին,
Անցնում են ահա զուլալ մի գետակ.
Եվ ծիծաղում են ամռան կեսօրին
Վեհ կատարները նրանց ոտքի տակ։
Որքա՜ն թավիշ են կատարները զով.
Ինչ լա՜վ է երգում հայրենի առուն,
Խորհող լեռների կապույտ երազով
Տեսնում են նրանք դաշտերի հեռուն։
Կարծես խոսում են լեռները խաղաղ,
Երկինքն է խոսում և անտառը ծեր.
— Հիացե՜ք մեզնով, ճամփորդնե՜ր
խիզախ,
Այս ամենն ահա հայրենի՜քն է ձեր։

րի բնակչության հիմնական զբաղմունքը պղնձարդյունաբերությունն է և դրա հետ կապված տնտեսության մյուս ճյուղերը:

Ղափանի պղնձահանքերը հայտնի են դեռևս միջին դարերից: Այստեղ այդ ժամանակներում արդյունահանվել ու վերամշակվել են գետնի երես դուրս եկող պղնձի երակներն ու առանձին բովերը: Համեմատաբար ավելի մեծ չափերով նրա հանքերի շահագործումն սկսվում է 19-րդ դարի երկրորդ կեսին: Սակայն մինչև սովետական կարգերի հաստատումը Ղափանի հանքերի արտադրանքը չնչին էր, բոլոր տեսակի աշխատանքները մեծ մասամբ կատարվում էին ձեռքով:

Սովետական տարիներին Ղափանում հիմնվում է պղնձի խոշոր կոմբինատ և նրա պղնձարդյունաբերությունը հիմնովին վերափոխվում է նորագույն տեխնիկայի հիման վրա: Հնությունների շարքն է անցնում ֆրանսիացիների կառուցած Ղափանի հին ու հասարակ պղնձաձուլարանը, կառուցվում է հարստացուցիչ խոշոր ֆաբրիկա (ֆլոտացիոն ֆաբրիկա), հանքախորշերը էլեկտրիֆիկացված գծերով միացվում են իրար, աշխատանքի բոլոր օղակները ենթարկվում են մեքենայացման, և Ղափանը դառնում է Սովետական Միության պղնձարդյունաբերության ամենակարևոր կենտրոններից մեկը:

Նախկինում Ողջի գետի աջ ափին կծկված հողաշեն ու խարխուլ տներով Ղափանն այժմ դարձել է տուֆակերտ, բազմահարկ շենքերի քաղաք, գրավելով մոտ 15 քառ. կմ. տարածություն: Ղափանն ունի մոտ 30000 բնակիչ: Քաղաքն ամբողջապես թաղված է մրգատու և դեկորատիվ ծառաստանների մեջ, իսկ նրա ծայրամասերի տների բակերում ամենուրեք այգիներ և բանջարանոցներ են: Ղափան քաղաքին մի առանձին շուք է տալիս Խուստուփ լեռը, լրացնելով նրա առանց այդ էլ գեղատեսիլ համայնապատկերը:



Հրաժեշտ տալով Ղափանին, մեր օրերում կառուցված բարեկարգ խճուղով շարժվենք դեպի նորակերտ Քաջարան:

Ղափանից Քաջարան տանող ճանապարհին առաջին տեսարժան վայրը, որ պետք է ուշադրության



արժանանա, պատմական ՀԱԼԻՁՈՐ բերդի ավերակներն են: Հալիձորը գտնվում է Ղափան քաղաքից 5-6 կմ. արևմուտք, Ղափան-Քաջարան խճուղու ձախ կողմում, Ողջի գետի բարձրադիր աջ ափին, Բեխ գյուղի (այժմ բանավան) հանդամասում, անտառապատ լեռնալանջի վրա:

Հալիձորի բերդը օտար նվաճողների դեմ մեր ժողովրդի մղած ամենահերոսական մարտերից մեկի անկենդան վկան է: Այստեղ 1727 թվականին հայկական փոքրիկ ջոկատը տաղանդավոր զորավար և ժողովրդական հերոս Դավիթ Բեկի գլխավորությամբ ջարդել է թուրքական նվաճող մեծաթիվ բանակը ու դուրս շպրտել Ղափանի սահմաններից:

Անշուք է եղել Հալիձորը: Մեր պապերն այն կառուցել են շուտափույթ, Դավիթ Բեկի (1722—1730 թթ.) համար հենակետ ու աթոռանիստ դարձնելու նպատակով: Սակայն բարձր դիրքը, թիկունքում վեր խոյացած անանցանելի լեռնաշղթան, առջևի մասում ընկած Ողջի գետի կառիվեր ձորը, շրջակայքի անտառները, պաշտպանական կառուցվածքները, այդ բոլորը Հալիձորի բերդը դարձրել են անմատույց: Նրա բոլոր կառուցվածքները՝ պարիսպները, միակ աշտարակը, եկեղեցին, պահեստները, շենքերը, բոլորը շինված են անմշակ քարերով, կրաշաղախով: Բերդի ավերակները վատ են պահպանված: Աշտարակը, պարիսպները, եկեղեցին կիսակործան վիճակում են, իսկ մյուս կառուցվածքները՝ ստորերկրյա անցքերը, փինանոցներն ու կորանոցները, ինչպես և վաղեմի բերդի ստորոտին եղած Հալիձոր գյուղը՝ կործանված են: Բերդի ավերակների մեծ մասն արդեն թաղված են առաջ արշավող անտառի տակ:

Բերդի մոտի անշուք գերեզմանոցում թաղված է Դավիթ Բեկը: Տեղացիները Հալիձորի, Դավիթ Բեկի և նրա զինակիցների հետ կապված իրական պատմություններին միահյուսել են վանավոր ավանդություններ, որպիսիք հաղորդվում են բերնե-բերան, սերնդիցսերունդ: Այստեղ կոթող չունեն Դավիթ Բեկը, նրա զինակիցներն ու զինվորները: Նույնիսկ հայտնի չէ Դավիթ Բեկի գերեզմանաքարը: Բայց ավերակ բերդի ամեն մի քարը, դուռը, աշտարակը, ստորերկրյա անցքի հետքը, գերեզմանաքարն ու արդեն վայրիացած մրգատու այգու յուրաքանչյուր ծառ ու խաղողի վազ մի-մի հուշ են մեր հերոս պապերի մղած հերոսական կռիվների մասին:

Խնամքով պետք է պահպանել մեզ ժառանգություն մնացած այս սրբությունները:

Հալիձորի բերդի ավերակների վրայից վերադառնալով խճուղի, շարունակենք ուղևորությունը:

Այժմ գործող Ղափան-Քաջարան խճուղին գրեթե միշտ ձգվում է Ողջի գետի ձախ կողմում և ունի ուժեղ թեքություն, որը կառուցվել է Հայրենական պատերազմի և դրան հաջորդած տարիների ընթացքում: Չնայած բավական մեծ վերելքին, խճուղին ոլորաններ քիչ ունի և չի շեղվում Ողջի գետի ձորից: Տեղտեղ այն իջնում է ընդհուպ մինչև գետափ, իսկ տեղտեղ բարձրանում է կառիթափ լեռների բարձրադիր լանջերը: Խճուղին անցնում է լեռնային Զանգեզուրի ամենալեռնոտ ու հակադրություններով լի մասերով: Ճանապարհի աջ կողմում Զանգեզուրի և Բարկուշատի երկնասլաց լեռներն են, հատված անտառաշատ խոր ձորերով ու վիհերով, իսկ ձախ կողմում Ողջի գետի անդնդախոր ձորն է, որից այն կողմ՝ սաղարթախիտ ու թավ անտառներով ծածկված Մեղրու լեռնաշղթան: Մի խոսքով, ամենուրեք լեռներ, անտառներ, առվակներ ու գետակներ, ջրվեժներ: Այս չքնաղ լեռնագավառի բնության համայնապատկերը լրացնում են թռչունների դայլայլը և Ողջի գետի աղմուկ-աղաղակը: Մի ժամանակ պարզ ու սպիտակափրփուր էին Ողջիի ջրերը: Նրա մեջ անհագորեն իր դյութող խաղն էր խաղում լեռնային գետակների թագուհին՝ կարմրախայտը: Բայց այժմ Ողջին «հոգնած» ու պղտոր է: Նրա ջրերով են Քաջարանի հարստացուցիչ ֆաբրիկայում կտում մոլիբդենը, և Ողջին Քաջարան քաղաքից սկըսած ձկնազուրկ է ու պղտոր:

Ղափան-Քաջարան ճանապարհի վրա և նրա մոտակայքում կան բնակելի բազմաթիվ կետեր և արդյունաբերական օբյեկտներ: Ճանապարհից ձախ, Ողջի գետի ձորում տեղադրված են երկու ջերմաէլեկտրակայաններ, իսկ խճուղու վրա եղած ավանների ու գյուղերի թիվը յոթից անցնում է: Ճանապարհի ամբողջ



երկայնքով էլեկտրական լույսերը գրեթե չեն ընդհատվում: Ամենուրեք աշխատանքային եռուզեռ է, ամենուրեք կառուցում են:

Ուղևորի վրա արտակարգ տպավորություն է թողնում մանավանդ ճանապարհի՝ Աչխլու գյուղից մինչև



Դավիթբեկ ավանն ընկած հատվածը, որն անցնում է մի քանի հարյուր մետր բարձրություն ունեցող ժայռոտ լեռան փորվածքով: Այստեղ ճանապարհի տակ Ողջի գետի խոր անդունդն է, իսկ վերևը՝ սեպացած լեռը, որը սպառնում է փլվել և ոչնչացնել իր կրծքին փարված խճուղին: Ինչպես ասվեց, խճուղու ուղղությամբ եղած հիշարժան վայրերից են՝ Վահանավանքի, Կապան քաղաքի և Բաղաբերդ ու Ձևու բերդերի ավերակները:

Վահանավանքի և Կապան քաղաքի ավերակների վայրը հարմար է գնալ Ղափան-Քաջարան խճուղու կիսաճանապարհին գտնվող Դավիթբեկ ավանից: Դավիթբեկից մինչև վաղեմի Կապան քաղաքի ավերակները ավտոմեքենայով կարելի է գնալ ընդամենը մի քանի րոպեում:

ԿԱՊԱՆ քաղաքը գտնվում էր այժմյան Աչխլու գյուղի դիմաց, Ողջի գետի աջ բարձրադիր ափին, եռանկյունաձև մի ոչ մեծ տարածության վրա, որն իր սուր ծայրով մոտենում է այժմյան Դավիթբեկ ավանին: Կապանը միջին դարերում Սյունիք աշխարհի այս կողմերի միակ քաղաքն էր: Կապանն առաջին անգամ հիշատակվում է 5-րդ դարում որպես բնակավայր, իսկ 10-րդ դարից վեր է ածվում քաղաքի: Այն Սյունիքի թագավորության (10—12-րդ դարեր) մայրաքաղաքն էր: Մեծ չի եղել Կապանը: Բնակչության թիվը հավանաբար չի հասել նույնիսկ 20 հազարի: Երկարատև չի եղել նաև նրա պատմությունը: Դեպի Սյունիքի թագավորություն արշաված թուրք-սելջուկներին հաջողվում է 1103 թվականին ավերել Կապանը: Դրանից հետո քաղաքը մի քանի դար շարունակում է իր գոյությունը որպես սովորական բնակավայր և ապա իսպառ վերանում պատմական ասպարեզից:

Կապան անունը հետագայում պահպանվել է Ղափան ձևով, որն այժմ կրում են վաղեմի Կապանից 17-18 կմ. հեռավորության վրա գտնվող Ղափան քաղաքն ու համանուն շրջանը:

Կապան քաղաքի ավերակները վատ են պահպանված, դրանք հազիվ են նշմարվում: Անտառը ծածկել է քաղաքի ավերակների մեծագույն մասը, իսկ մյուս, փոքր մասն էլ վեր է ածվել միապաղաղ դաշտի, իր ընդերքում թաքցնելով կառուցվածքների վերջին մնացորդները: Միայն նշմարվում են քաղաքի արևելյան կողմի պարիսպները (Կապանը պարսպապատ է եղել միայն արևելյան կողմից, նա հարավից և հյուսիսից պաշտպանված էր բնական ամրություններով՝ Մեղրու լեռնաշղթայով և Ողջի գետի անանցանելի ձորով) իրենց մի քանի աշտարակներով և արևմտյան կողմում եղած Բաղակու Քար ամրոցն իր պաշտպանական կառուցվածքներով:

Կապանի ավերակների շրջապատը Զանգեզուրի հավվագույն գեղատեսիլ անկյուններից մեկն է: Սաղարթախիտ ու մրգատու ծառերով հարուստ անտառը, երկնասլաց լեռները, Ողջի գետի՝ կարմանք պատճառող խոր կիրճը, սառնորակ աղբյուրները, մուգ կապույտ երկինքը, մաքուր ու առողջարար օդը և Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատի ու շինարարական վարչության ստեղծած հարմարությունները՝ գեղեցիկ ու լուսավոր շենքերը, ջրավազանները, հրապարակները, բանջարանոցները... այդ բոլորը Բաղաբերդի պիոներական ճամբարը (այսպես է կոչվում սյատմական Կապանի տեղում կետեղված պիոներական ճամբարը) դարձնում են մեր մանուկների համար հավվագույն հանգստավայրերից մեկը:

ՎԱՀԱՆԱ վանքի ավերակները գտնվում են Կապանից մոտ 4 կմ. արևելք, Շիհարջիկ գյուղի դիմաց, Ողջի գետի աջ կողմում, մի անտառաշատ ու խորը ձորում: Այս վանքը կառուցվել է 911 թվականին, Վահան իշխանի օրոք և նրա անունով էլ կոչվել: Այն բաղկացած է երկու տաճարներից և օժանդակ շենքերից: Տաճարները կառուցված են սրբատաշ քարերով: Մեծ տաճարից կանգուն են միայն նրա երեք կամարները և պատերի հիմքերը, իսկ փոքր տաճարը, որն ավելի գեղեցիկ է և պատի վրա ունի մի բավական ընդարձակ արձանագրություն, գտնվում է կիսակործան վիճակում: Մինչև օրս գոյություն ունի այն աղբյուրը, որը դեռևս 10-րդ դարում խողովակներով բավական հեռավորությունից բերված էր վանքի համար: Շատ ավելի վատ են պահպանված վանքի օժանդակ շենքերի մնացորդները, որոնց մեծ մասը թաղված է հողի ու անտառի տակ: Վահանա վանքի ավերակներն իրենց շրջակայքով գրավում են շատ կքոսաշրջիկների:

Կապան քաղաքի և Վահանա վանքի շրջապատի բնությանը ու ավերակներին ծանոթանալուց հետո պետք է վերադառնալ Դավիթբեկ ավանը և շարունակել ուղևորությունը դեպի Քաջարան:

Բայց ոչ, չպետք է շտապել:

Չէ՞ որ նորակերտ Դավիթբեկ փոքրիկ ավանն ունի մի նշանավոր հին հարևան. դա ԲԱՂԱԲԵՐԴՆ է:

Ավանի մոտ, նրա արևելյան կողմում, կառիքափ լանջերով վեր բարձրացած լեռան վրա գտնվում են

Սյունիքի և հին ու միջնադարյան Հայաստանի ամենանշանավոր բերդերից մեկի՝ Բաղաբերդի ավերակները: Իբրև անմատչելի բերդ՝ Բաղաբերդը հռչակված է եղել դեռևս 4-րդ դարից: Բաղաբերդի նշանակությունն ավելի մեծ էր 10—11-րդ դարերում, երբ արտաքին հարձակումների վտանգից հարկադրված այստեղ էին կենտրոնացվել Տաթևի և Սյունիքի մյուս վանքերի հսկայական հարստություններն ու բազմահազար ձեռագրերը: Բաղաբերդը փաստորեն Կապան քաղաքի միջնաբերդն էր, բայց տեղանքի պատճառով գտնվում էր ոչ թե քաղաքի կենտրոնական մասում, այլ նրա արևմտյան ծայրակետում, Ողջի գետի ձախ ափին: Կապանի ավերումից հետո (1103 թ.) Բաղաբերդը դարձել էր Սյունիքի թագավորության մայրաքաղաքը: Իր գոյության ամբողջ ընթացքում (մինչև 12-րդ դարի երկրորդ կեսը) Բաղաբերդը չի գրավվել որևէ նվաճողի կողմից: Սյունիքի փոքր թագավորության տերիտորիաները գրավելուց ու ավերելուց հետո, սելջուկներին հաջողվում է 1170 թ. գրավել նաև այդ թագավորության վերջին պատվարը՝ Բաղաբերդը: Նրանք թալանում են քաղաքի հսկայական հարստությունները և ոչնչացնում ավելի քան 10000 մեծարժեք ձեռագրեր: Դրանից հետո Բաղաբերդն այլևս չի վերականգնվում:

Հակառակ Կապան քաղաքի, Բաղաբերդի ավերակները բավական լավ են պահպանված: Պահպանվել են բերդի ներքին պարիսպն ու արտաքին պարսպի որոշ հատվածներ, աշտարակների մեծ մասը, նկատելի են ստորերկրյա անցքերի հետքեր: Արտաքին կամ մեծ պարիսպը իր աշտարակներով ձգվում է լեռան ստորոտին՝ Ողջի և Գիրաթաղ գետերի ափերի երկայնքով, իսկ ներքին պարիսպն ավելի քան 12 մետր բարձրության հասնող իր վեհաշուք բուրգերով տեղադրված է լեռան գագաթային մասում: Ներքին պարիսպն ու բուրգերն ավելի լավ են պահպանված, քան արտաքինները: Բաղաբերդի ավերակների տեղում հնագիտական պեղումներ չեն կատարվել, չհաշված պատահական որոնումները և դիպվածով հայտնաբերված նյութական կուլտուրայի մի քանի մնացորդներ:

Պատմական Հայաստանի մյուս բերդերի՝ Ողականի, Դարոյնքի, Արտագերսի, Կապույտ բերդի, Երնջակի, Ամբերդի, Բջնիի, Որոտնայի և այլ բերդերի նման Բաղաբերդն էլ վեհաշուք է եղել: Սեպացած լեռան փարված նրա ավերակներն այժմ էլ մեծ տպավորություն են թողնում դիտողի վրա: Բաղաբերդը դարեր շարունակ իր ինքնուրույն գոյության համար մարտնչած քաջարի սյունեցիների ամենահուսալի հենակետն էր, անառիկ մի բերդ, որի մասին մեծ գովեստով է խոսում 13-րդ դարի խոշոր պատմագիր Ստեփանոս Օրբելյանը: Տեղացիները մինչև օրս պահպանել են Բաղաբերդի հետ կապված ավանդություններ, զրույցներ ու հերոսապատումներ: Նրանք սովորաբար Բաղաբերդը կոչում են «Դավիթ Բեկի բերդ»՝ այդ մեծահռչակ բերդի գոյությունը կապելով մեր սիրած հերոս Դավիթ Բեկի անվան հետ, չնայած վերջինիս հետ այն ոչ մի առնչություն չունի:

Շարժվենք դեպի Քաջարան:

Դավիթբեկ ավանից դուրս գալուց հետո 10—15 րոպե անց մեքենան հասնում է Ողջի գետի և նրա ձախակողմյան Գեղի վտակի խառնարանը: Հենց այստեղ էլ, այդ գետի կազմած եռանկյունաձև փոքրիկ հարթության վրա (որտեղ այժմ կանական նպատակներով կառուցել են մի քանի շենքեր) գտնվում էր Ձևու բերդը, որը Դավիթ Բեկը կորավարական մեծ հնարամտությամբ խլեց Ասլամազ Ղուլի խանից: 18-րդ դարի առաջին քառորդում դեռևս կանգուն այդ բերդից գրեթե ոչինչ չի մնացել, բացի նրա պարիսպի մի փոքրիկ մնացորդից, շենքերի նշմարվող հետքերից և կամարակապ ավերակ կամուրջից, որը ձգված էր Գեղվա գետի վրայով, նրա գետաբերանում, Ձևու բերդը Ղափանի 18-րդ դարի հայտնի բերդերից մեկն էր, իսկ Ղափանն այն ժամանակ ուներ 7 բերդ և այդ պատճառով էլ այն երբեմն կոչվում էր նաև «Յոթնաբերդ գավառ»:

Ձևու բերդի ավերակների վրայից մինչև Քաջարան ընդամենը 13 կմ. է: Ճանապարհի այդ հատվածում եղած գյուղերից նշանավոր է հատկապես Լեռնաձորը, որն անասնապահական մեծ սովխոզի կենտրոն է և արտաքինից իր երկհարկանի շենքերով փոքրիկ քաղաքի տպավորություն է թողնում, թաղված մրգատու այգիների մեջ:

Մեր երթուղու ծայրակետ՝ ՔԱՋԱՐԱՆ քաղաքը տեղադրված է ծովի մակերևույթից ավելի քան 1800 մետր բարձրության վրա, Ողջի գետի վերին հոսանքի շրջանում:

Քաջարան քաղաքն արևմուտքից, հարավից և հյուսիսից շրջապատված է Զանգեզուրի ու Մեղրու լեռնաշղթաներով, որոնց կազմած ձորով դեպի արևելք հոսում է «արագավազ» Ողջին: Քաղաքը գրկող լեռնալանջերի՝ թփուտներից և բանջարանոցներից ազատ տարածությունները ամռան կեսին մշտապես պատած



են լինում փարթամորեն աճող ծաղկավոր ու հացազգի խոտերի թավիշով։ Կլիմայական պայմանները խիստ են։ Ձմռանն այստեղ լինում են բուք ու բորան, հարեվան Կապուտջուղից փչում է սառը քամի։ Որպես բարձր լեռնային շրջան այստեղ հմայիչ է հատկապես գարունն ու ամառը։ Գարնանը հաճախ ամբողջ ձորը ծածկվում է մուգ արճճագույն ամպերով, լինում է կայծակ ու որոտ, որն իր արձագանքն է գտնում անդնդախոր ձորերում։

Քաղաքի գրաված տարածությունը հարուստ է ջրերով։ Նրա միջով երկայնակի ուղղությամբ հոսում է Ողջի գետը, որը բյուրեղապակու պես պարզ է ու փրփրալից։ Աջ ու ձախ կողմերից Ողջի գետին են միանում Հանքավանի գետը և մի քանի առվակներ ու աղբյուրներ։ Քաղաքի արևմտյան ծայրաշրջանում, Ողջի գետի աջ ափին բխում է ածխաթթվային-երկաթային բաղադրությամբ հանքային սառն աղբյուր («Թթուջուր»), որի մոտ հաճախ հավաքվում և իրենց հանգիստն են անցկացնում բնակիչները։

Քաջարանը Սովետական Միության մոլիբդենային հայտնի հանքավայրերից մեկն է։ Մոլիբդենից բացի, այստեղ կան նաև պղնձի մեծ պաշարներ։ Նախկինում հայտնի են եղել նրա պղնձահանքերի մի քանի բովերը, որոնք որոշ ժամանակ տնայնագործական պարզ եղանակով ենթարկվել են շահագործման։

Սակայն Քաջարանի պղնձա-մոլիբդենային հանքավայրը հետազոտվել է մեր օրերում՝ հատկապես Հայրենական պատերազմին հաջորդած տարիներին։ Այժմ այստեղ ստեղծված է հայրենական նորագույն տեխնիկայով հագեցված պղնձա-մոլիբդենային մի հսկա կոմբինատ, որն իր արտադրանքով Միության մեջ գրավում է եզակի տեղերից մեկը։ Հանքի շահագործումը հիմնականում բացօթյա է։ Հանքավայրից հարըստացուցիչ ֆաբրիկա հանքանյութը տարվում է հզոր ձոպանուղիներով, որոնք ձգված են Ողջի գետի ձորի վրայով։

Քաջարան քաղաքն այդ կոմբինատի ծնունդն է։ Նա շատ երիտասարդ է, ընդամենը 16-17 տարեկան։ Բայց նրա աճի տեմպերը շատ մեծ են։ Քաջարանը ծնունդ է առել նախկին Քաջարան և Ողջի գյուղերից, բայց կարճ ժամանակում աճելով գրավել է երկու-երեք կմ. լայնություն և այդքան էլ երկարություն ունեցող մի շրջան։ Նրա հատակագիծը շախմատաձև է, ուղիղ փողոցներով։ Տները երեք-չորս հարկանի են, գերազանցապես շարված սրբատաշ վարդագույն տուֆով։ Ունի մի քանի միջնակարգ դպրոցներ, տեխնիկում, հիվանդանոց, մանկապարտեզներ, բանվորական ակումբներ, կուլտուրայի պալատ, կինոթատրոններ, գրադարաններ։

Քաջարան քաղաքի արևմտյան մասում բարձրանում է այս լեռնաշխարհի լեռների արքան՝ Կապուտջուղը, որը Սովետական Հայաստանի երկրորդ բարձր լեռն է (3906 մ.)։ Կապուտջուղը Քաջարանի համար մեծ փարոս է։ Նա իր ձյունե գագաթով սպիտակին է տալիս մութ ու մռայլ ձորերից վերև։ Կապուտջուղը ջրառատ է, աղբյուրաշատ։ Լանջերը ծածկված են շռայլ ճոխ արոտավայրերով և գորգերով։ Նրա ձորերին և թավշապատ լեռնալանջերին գեղեցկություն են տալիս վայրի այծերն ու հայկական վայրի ոչխարը, որը հավվագյուտ է դարձել ամբողջ Հայկական լեռնաշխարհում։ Ընդհուպ մինչև Կապուտջուղի գագաթը կարելի է բարձրանալ ավտոմեքենայով։

## ՍԱՐԵԶ ԼՃԻ ԱՌԱՋԱՑՈՒՄԸ

*1911 թ. փետրվարին Պամիրում տեղի ունեցավ ավերիչ երկրաշարժ։ Ստորերկրյա ուժեղ հարվածներից հետո լեռներում լսվեց ուժեղ աղմուկ և դղրդոց։ Փուլ եկան հսկայական ժայռեր, խոշոր քարաբեկորները փոշու ամպեր առաջացնելով, խճի հսկայական կույտերի հետ գլորվեցին լեռնալանջերով ցած՝ դեպի գետահովիտները։ Առանձնապես ուժեղ էր ստորերկրյա հարվածը Մուրգաբ գետի հովտում, որտեղ միանգամից կործանվեց հինգ գյուղ։ Այստեղ փուլ եկավ գրեթե մի ամբողջ սար և լցրեց գետի լայնակի հովիտը, ծածկելով մոտ 16 քառ. կիլոմետր տարածություն։ Փակվեց Մուրգաբ գետի առաջը։ Ստեղծվեց մի յուրահատուկ ամբարտակ մինչև 700 մետր բարձրությամբ։ Դադարեց Մուրգաբի հոսքը։ Գետի հովտում առաջացավ լիճ, որն սկսեց շարունակ մեծանալ։ Երկու տարի հետո լիճն արդեն ուներ 26 կիլոմետր երկարություն, բայց այն շարունակում էր մեծանալ։ Շուտով նա ծածկեց ևս մի գյուղ, վաղօրոք հարկադրելով նրա բնակիչներին տեղափոխվելու մեկ ուրիշ տեղ։*

*Քսան տարվա ընթացքում լճի մակարդակը բարձրացավ 140 մետրով, իսկ երկարությունը հասավ 60 կիլոմետրի։ Այժմ լիճն առանձին տեղերում ունի մինչև 500 մետր խորություն։*

*Գետային հովտում փլվածքի հետևանքով առաջացած լճերի մեջ սա ամենախոր լիճն է։ Պամիրի բարձր լեռնային այս լիճը, որն առաջացավ 1911 թ. երկրաշարժի հետևանքով, կոչվում է Սարեզի լիճ, նախկին Սարեզ գյուղի անունով, որն այժմ մնացել է լճի տակ։*



# ՀԱԼՈՆԵՐ

*Սիրելի խմբագրություն, մի անգամ, երբ սովորականի նման նայում էի երկինքին, հանկարծ նկատեցի, որ Լուսինն օղակված է ծիածանի գույներով: Դրանից հետո Լուսնին այդպիսի զգեստով այլևս չեմ տեսել: Խնդրում եմ օգնել ինձ հասկանալու այդ երևույթը:*

ԱՆԱՀԻՏ ՀՈՎՍԵՓՅԱՆ

*Մեղրի, Ստ. Շահումյանի անվան դպրոց, 10-րդ դասարան*

Սիրելի Անահիտ, մեր երկրագունդը շրջապատված է օդի հաստ շերտով, որը կոչվում է մթնոլորտ:

Երկրի մթնոլորտի մեջ տեղի են ունենում մի շարք գեղեցիկ լուսային, այսպես կոչված օպտիկական երևույթներ: Այդ երևույթների մի մասը կապված է միայն Երկրի հետ, իսկ մյուս մասը՝ Երկրի ու Արեգակի կամ Լուսնի և Երկրի հետ:

Գարնան ամիսներին թափանցիկ և արագընթաց բարձր ամպերը երկինքը աստիճանաբար դարձնում են կաթնա-սպիտակ, որոնք լինում են գլխավորապես փետրանման-շերտավոր, երբեմն էլ՝ փետրանմանկուտակված: Այդ դեպքում, թվում է, թե Արեգակը կամ Լուսինը լուսավորում են փայլատ ապակու միջով, նրանց ուրվագծերը դառնում են աղոտ:

Նման դեպքերում Արեգակի կամ Լուսնի շուրջը առաջանում են մեկ կամ երկու օղակային շերտեր, ինչպես նաև լուսային աղեղներ, սյուներ, խաչեր ու բծեր: Այդ գեղեցիկ տեսարանը կոչվում է հալո:

Այն բոլոր ամպերը, որոնց վրա հալո է առաջանում, բաղկացած են մանր, վեցանկյունանի պրիզմանման սառցաբյուրեղներից: Դրանք լուսավորվում են Արեգակի կամ Լուսնի ճառագայթներով: Ճառագայթները դրանց մեջ բեկվելով առաջացնում են տվյալ լուսային երևույթը՝ հալոն:

Սովորաբար հալոյի ներսի եզրը լինում է կարմիր, դրսինը՝ կապույտով շղարշված:

Հալոյի երևույթը երբեմն դիտվում է և այն ամպերի մեջ, որոնք առաջանում են ինքնաթիռների արագ թռիչքից:

Երբ Արեգակը հորիզոնից քիչ ցածր է լինում, այդ դեպքում ևս երևում են հալոներ, բայց ոչ լրիվ:

Հալոների ժամանակ, երբեմն կարելի է տեսնել և կեղծ արեգակներ՝ իրենց ամբողջ շքեղությամբ:

Հալոյի երևույթը հազվադեպ չէ, ինչպես կարծում են շատերը:

ՊԱՐԹԵՎ ԳԵՎՈՐԳՅԱՆ

*Երևանի պլանետարիումի ավագ դասախոս*



Կասպից ծովի անունը մինչև այժմ 70 անգամ փոփոխվել է: Հին ճանապարհորդների, իրավաբանների, վաճառականների ձեռագրերում պահպանվել են բազմաթիվ անուններ: Այն կոչվել է Ավարական ծով, Աբեսկյան, Գիրկանյան, Դերբենտյան և այլն: Այժմյան անունը տրված է մեր դարաշրջանի առաջին հազարամյակում, երբ նրա ափերին բնակվում էր կասպի ժողովուրդը:

# ՀԱՅԿԱԿԱՆ ԼԵՌՆԱՇԽԱՐՀԻ ՄԻԱԿ ԳՈՐԾՈՂ ՀՐԱԲԽԱՅԻՆ ԼԵՌԸ

*Երկրի ահավոր երևույթներից են հրաբուխները: Ներկայումս հաշվում են մոտ 500 գործող հրաբուխներ, բայց շատ ավելի մեծ թիվ են կազմում հանգած հրաբուխները: Նրանցից ամենամեծերից մեկը Արարատ լեռն է, որը տիրապետող վեհությամբ բարձրանում է Հայկական լեռնաշխարհի վրա:*

*Հայկական լեռնաշխարհը համարվում է տիպիկ հրաբխային երկիր: Նրանում այնքան շատ են ոչ միայն հրաբխային սարահարթերն ու լեռնաշղթաները, այլև առանձին մեկուսացված հրաբխային լեռնազանգվածները, ինչպես, օրինակ՝ Արագածը, Սիփանը, Նեմրութը և մյուսները: Սակայն նրանք բոլորն էլ համարվում են հանգած հրաբուխներ: Ամբողջ Հայկական լեռնաշխարհում (սակայն ոչ միայն Հայկ. լեռնաշխարհում, այլև Մերձավոր Արևելքում) բացառություն է կազմում միայն մի լեռ, դա Թոնդուրեկ լեռն է, որի գործունեության հետքերը պահպանվում են մինչև այժմ:*

*Թոնդուրեկ լեռը գտնվում է Բայազետի գավառի հարավային մասում: Նրա գլխավոր խառնարանն այլևս չի արտավիժում լավա, գոլորշի: Այն ներկայումս բռնված է փոքր մի լճով: Սակայն նրանից մի փոքր ներքև, լեռան խորը*

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԲԱՐՁՐ ԼԵՌՆԱՅԻՆ ԳՈՏՈՒ ԼՃԵՐԸ

ԽԱԶԻԿ ՆԱԶԱՐՅԱՆ

*Աշխարհագրական գիտությունների թեկնածու*

Հայաստանը լեռնային երկիր է: Նրա մակերևույթի բարձրությունների տարբերությունը հասնում է ավելի քան 3700 մետրի: Այստեղ պարզորոշ կերպով արտահայտված է աշխարհագրական ուղղաձիգ գոտիականությունը: Լեռնային վայրերի բարձրադիր մասերում՝ 2700 մետրից վերև տիրապետում է ալպյան՝ բարձր լեռնային գոտին:

Ալպյան մարգագետիններով ու բազմերանգ «գորգերով» կարդարված, իսկ հաճախ նաև ժայռային մերկ ցցվածքներով և քարաթափվածքներով ներկայացվող բարձրաբերձ լեռների, բյուրավոր ծաղիկների բուրմունքով հագեցած լուսառատ, լեռնային կով օդի և բնության նմանօրինակ բազմաթիվ տարրերի հետ միասին, մեր երկրի ալպյան գոտուն հատուկ հմայք են տալիս այստեղ այնքան տարածված բարձր լեռնային լճերը, որոնք իրենց ծագմամբ սերտորեն կապված են երկրաբանական մոտիկ անցյալում տեղի ունեցած հրաբխային և սառցապատման պրոցեսների հետ:

Երկրակեղևի պատռվածքներից արտավիժած հրեղեն լավայի հոսքերը փակել են հին ռելեֆի գածրությունների ելքերը և կամ համեմատաբար հարթ տեղանքում միմյանց են միացել ու միջհոսքային տեղամասերում առաջացրել ոչ մեծ գոգավորություններ, որոնք հետագայում լցվել են ջրով ու վերածվել լճերի:

Հայաստանի բարձր լեռնային գոտու հրաբխային ծագման լճերն առանձնապես բնորոշ են Գեղամա լեռներին: Այս բարձրանիստ լեռների գրկում, ծովի մակերևույթից 3038 մ. բարձրության վրա տեղադրված է մոտ 1 քառ. կմ. մակերես զբաղեցնող Ակնա լիճը, որի արևելյան մասն իրենից ներկայացնում է հրաբխային խառնարան, ուր և դիտվում է լճի առավելագույն խորությունը՝ 15 մետր: Այս բարձր լեռնային գեղեցկուհին օղակված է երիտասարդ հրաբխային կոներով և ալպյան հրաշագեղ մարգագետիններով: Նրա ափամերձ թափանցիկ ու առողջարար օդը լցված է եռփներանգ թիթեռնիկների խմբերով: Լճի ջուրը պարզ է ու անուշահամ: Նրա կապույտ հայելում արտացոլվում են շրջակա լեռները և երկնքի լազուրը: Ակնա լճից սկսվող խողովակաշար առվակների ցանցը ակոսում է Գեղամա լեռների լանջերը և ջուր մատուցում փարթամ արոտավայրերում արածող անասնահոտերին:

Արտակարգ հետաքրքրություն են ներկայացնում հրաբխային լեռների գագաթային գոգավորություններում՝ խառնարաններում տեղավորված լճերը: Այդ տեսակետից հատկապես ուշագրավ է Աժդահակ լեռան խառնարանային լիճը:



Աժդահակ հրաբուխը (3598 մ) գտնվում է Գեղամա բարձրավանդակի կենտրոնական մասում և արտաքինից թողնում է հատած կոնի տպավորություն: Նրա գագաթային մասում տեղավորված է մոտ 200 մ. տրամագիծ և 80 մ. խորություն ունեցող խառնարանը, որի կենտրոնական մասը բռնված է լճով: Խառնարանային այս գեղատեսիլ լիճն ունի մինչև 15 մ. խորություն և 50 մ. շառավղով շրջանային մակերես: Լճի ջուրը հստակ է և նրա ջերմաստիճանը կախված է օդի ջերմաստիճանից: Խառնարանը, որը վերջանում է ոչ մեծ սրություն ունեցող պատերով, ունի մոտ 700 մ. երկարությամբ շրջագիծ: Նրա ներքին լանջերը դեպի լիճն են իջնում 20—30 աստիճան թեքությամբ և ամբողջովին ծածկված են մանրացած, կարմրավուն խա-

---

*պատռվածքներից մշտապես ծուխ է դուրս գալիս: Դրանից բացի, լեռան հարավային կողի վրա կա մի այր, որտեղից շարունակ տաք (80—100 աստիճան) գոլորշիներ են բարձրանում: Նույն տեղում վիհի հատակից հաճախ լսվում են ահագդող թնդյուններ (դղրդոց): Ուժեղ դղրդոցից երբեմն ցնցվում է ամբողջ հողը: Նշանակալից է հատկապես 1859 թվականի երկրակեղևի ուժեղ ցնցումը, որի հետևանքով լեռան շուրջն առաջացան բազմաթիվ փոքրիկ (2—3 մետր բարձրության) հեյզերներ, որոնք սակայն մի քանի տարի մնալուց հետո անհետացան:*

*Թոնդուրեկի լեռնալանջերի շատ մասերից մինչև այժմ էլ դուրս են գալիս առատաբուխ տաք ջրեր: Նրանցից է կազմված Եփրատի սկզբնական վտակներից մեկը, որը փոքր տարածություն անցնելուց հետո, միանում է Արածանիի (Մուրադ գետի) պաղ ջրերին:*

բամով: Հյուսիսային դիրքադրության տեղամասերը տարվա ընթացքում 1—2 ամիս են ազատվում ձնածածկից, իսկ երբեմն նաև կլոր տարին մնում են ձյան տակ:

Հայկական լեռնաշխարհում նմանօրինակ գոգտրիկ լճերով հայտնի են՝ Նեմրութ, Թոնդուրեկ, Արմաղան (Սևանա լճի ավազանում) և մի քանի ուրիշ հրաբխային լեռների խառնարանները:

Հրաբխային ծագման, տարբեր չափի ու բնույթի լճերի ենք հանդիպում նաև մեր հանրապետության մյուս հրաբխային լեռներում՝ Խռնավի, Վարդենիսի, Սյունիքի և այլն:

Հայաստանի ալպյան գոտու լճերի առաջացման գործում մեծ դեր են կատարել մեզանից տասնյակ հազարավոր տարիներ առաջ հանդես եկած հզոր սառցապատումները, որոնք Զանգեզուրի, Խռնավի, Վարդենիսի, Գեղամա լեռներում, Արագածում, Սյունիքի բարձրավանդակում և մեր մյուս բարձր լեռնային շրջաններում առաջացրել են մեծ թվով կրկեսակերպ գոգավորություններ, տաշտակաձև հովիտներ և մորենային հսկայական կուտակումներ:

Հնագույն սառցապատումների գոյացրած կրկեսներից, մորենային թմբերի միջակա ցածրություններից, սառցաբերուկներով արգելափակված տաշտակաձև հովիտներից շատերն այժմ լցված են ջրով և ներկայացվում են որպես բարձր լեռնային լճեր: Այս կարգի լճերը, մեր հանրապետության սահմաններում, թեպետ քանակական տեսակետից հասնում են հարյուրների, բայց չափերով աննշան են: Նրանցից համեմատաբար նշանավոր են՝ Քարի, Սև, Ալ, Գազանա, Կապուտան և մի շարք ուրիշ լճեր:

Քարի լիճը մեր հանրապետության գեղատեսիլ լճերից է և գտնվում է Արագածի մերձգագաթային սարահարթի շրջանում, 3185 մ. բացարձակ բարձրության



վրա: Լճին առանձին հրապույր են տալիս նրա շրջապատի ալպյան մարգագետինները, լեռնային մաքուր օդը և սիգապանծ Արագածի ձյունափայլ գագաթի մոտիկությունը: Լճի ջուրը ջինջ է, կապուտակ, ափերը մեծ մասամբ քարքարոտ են: Լճի շրջագիծը կազմում է մոտ 4 կմ.: Ըստ երևույթին նախկին լճից փորված է եղել առու, որով նրա ջրի մի մասը հոսել է դեպի Համբերդի կիրճը:

Սև ու Ալ լճերը գտնվում են Սյունիքի հրաբխային բարձրավանդակում: Սև լիճը, որը տեղավորված է մոտ 2700 մ. բացարձակ բարձրության վրա, զբաղեցնում է շուրջ 2 քառ. կմ. մակերես և ունի մինչև 7,5 մ. խորություն, իսկ Ալը գտնվում է 2990 մ. բարձրության վրա, ունի 60 հեկտար մակերես և 4,5 մ. խորություն: Դրանցից առաջինը գոյացել է սառցադաշտային տաշտակաձև ընդարձակ հովտի մորենային արգելափակմամբ, իսկ երկրորդը՝ սառցադաշտային կրկեսում:

Մի քանի փուլով հանդես եկած հնագույն սառցապատումները Զանգեզուրի լեռնաշղթայում գոյացրել են բազմաստիճան կրկեսներ, որոնց մեծ մասի հատակը զբաղեցված է լճերով: Ապա այդպիսի լճերից են համարվում Գազանան ու Կապուտանը, որոնք համապատասխանաբար տեղադրված են 3500 և 3300 մ. բացարձակ բարձրությունների վրա: Նրանցից առաջինն ունի մոտ 58 հեկտար մակերես և 10,5 մ. խորություն, իսկ երկրորդը՝ 10 հեկտար մակերես և 22 մ. խորություն: Կան հնարավորություններ ու նախագծեր, այս և նախորդ լճերի ջրերով շրջակա արոտավայրերի ջրամատակարարման համար:

Ինչպես սառցադաշտային, այնպես և հրաբխային լճերը սնվում են հալոցքային և անձրևային ջրերով: Նրանք բոլորն էլ ձմռանը սառցակալվում են:

Հայաստանի բարձր լեռնային լճերը փոքր են, բայց հրապուրիչ իրենց մենության մեջ: Նրանք շրջակա բարձրաբերձ ու վես լեռների հետ, մեր երկրի ալպյան բնությունը դարձնում են առավել կենդանի ու հմայիչ:

## ԱՄԵՆԱՀԱՄԵՂ ՃԱՇԱՏԵՍԱԿՆԵՐԸ

*Երբ տանտերերը ցանկանում են քեզ հյուրասիրել որպես թանկագին հյուրի և սեղանի վրա են դնում ամենահամեղ ուտելիքները, դու չպետք է հրաժարվես ուտելուց, թե չէ կարող են քեզանից նեղանալ, կարող են կարծել, թե չես հավանում քեզ մատուցած կերակուրը:*

*Այո, ընդհանրապես լավ կարգը, երբեմն վերածվում է ծանր փորձության, հատկապես նրանց համար, ովքեր ընկնում են հեռավոր երկրները:*

*Երբ դու ճանապարհորդության դուրս գալու լինես, նկատի ունեցիր այս հանգամանքը և լցվիր արիությամբ: Ամենածանր փորձությունները կհանդիպես Հարավի հեքիաթային երկրներում: Արևմտյան Աֆրիկայում, օրինակ, քեզ կհրավիրեն ճաշակելու բռունցքի մեծություն ունեցող խխունջներ:*

*Դեմքդ մի ծռմռիր, հարկավոր է անտրտունջ ուտել և դեռ գովել կերածը:*

*Աշխարհամասի խորքերը գնալիս դու ստիպված ես լինելու կանգ առնել անանցանելի ջունգլիներով շրջապատ-*

Նկարչուհի ԱՐՄԻՆԵ ԿԱԼԵՆՑԸ վերջերս եղավ արտասահմանյան մի քանի երկրներում: Շրջագայության ընթացքում նա կատարել է մի շարք նկարներ այդ տեսարժան վայրերից:

Այս համարում տպագրում ենք նրա ճեպանկարներից մի քանիսը:

ՖԱՄԱԿՈՒՍՏԱ



ված գետափնյա գյուղակներում: Այստեղ սաղարթախիտ ծառերի տակ քեզ կհյուրասիրեն կոկորդիլոսի պոչի մսով: Հանկարծ չլինի թե հրաժարվես, ավելի լավ է նայես, թե ինչպիսի ախորժակով են խժռում խնջույքի մասնակիցները այդ համեղ, հազվագյուտ ուտելիքը:

Ահա դու Կոնգոյում ես: Քո նոր բարեկամները քեզ անմիջապես կտանեն աղմկոտ, ժխորով լի արևակեզ շուկան: Այնտեղ նրանք երկար կսակարկեն մի որևէ կիսամերկ տղայի հետ. սա կսկսի ապացուցել, որ ամբողջ շուկայում իր սև ու յուղալի, մազմզոտ թրթուրների նման թրթուր դժվար թե ճարվի: Վերջ ի վերջո քո բարեկամներն այլևս չեն նայի թանկությանը և մի քանի բուռ ընտիր թրթուր կգնեն քո պատվին կազմակերպված տոնական ճաշի համար:

Իսկ եթե դու ընկնես գեղեցիկ ու կանաչախիտ Բորնեո կղզին, տեղացի բնակիչներից դու կիմանաս, որ աշխարհում ամենահամեղ ուտելիքը ոչ խխունջն է, ոչ կոկորդիլոսի պոչը և ոչ էլ սև թրթուրները, այլ տզրուկներից պատրաստված ապուրը: Չինաստանում կսկսեն քեզ համոզել, թե ամենահամեղ ուտելիքը կրիայի հոտած ձուն է, իսկ ոմանք այդ նույն Չինաստանում կգերադասեն ծիծեռնակի բնով պատրաստած ապուրը: Շատ հնդկացիներ այս բոլորից վեր կդասեն խաշած մրջյուններ: Այնինչ Արաբական անապատի բեդվինները քեզ կմատուցեն տապակած մորեխը, որը հազվագյուտ ուտելիք է համարվում:

Արևադարձային երկրների բնակիչների այս սովորությունների մասին իմանալով՝ ոմանք ուսերը կթոթվեն ու զզվանքով քմծիծաղ կտան, իսկ ոմանք էլ կասեն «Ճաշակի մասին չեն վիճի»: Այդ նշանակում է, որ ոմանց խաշած կարտոֆիլ է դուր գալիս, իսկ ոմանց՝ խաշած մրջյուն:



Մեր ամսագրի այս տարվա փետրվարի համարում հայտարարված պատանի տեխնիկների մրցույթում հաղթող ճանաչվեց Ստեփանավանի շրջանի Գյուլագարակ գյուղի Թորգոմ Շահինյանի անվան միջնակարգ դպրոցի աշակերտ ՌԱՖԻԿ ԲԱԼԱՅԱՆԸ: Խմբագրությունը նրան պարգևատրեց տրանզիստորային ռադիոընդունիչով:

Լուսանկարում դուք տեսնում եք Ռ. Բալայանի հավաքած ռադիոընդունիչը:



# ԻՆՉ ԵՆ ՊԱՏՄՈՒՄ ԱՄԻՍՆԵՐԻ ԱՆՈՒՆՆԵՐԸ

ԿԱՄՍԱՐ ԱՎԵՏԻՍՅԱՆ
Աշխարհագրական գիտությունների թեկնածու

Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ

Ինչպես հայտնի է, Արեգակի շուրջը Երկրի կատարած մեկ լրիվ պտույտի ժամանակաշրջանը համարվում է մեկ տարի: Տարին իր հերթին բաժանվում է տասներկու ամիսների:



Հունվար

Ծանոթանանք ամիսների անունների առաջացմանը, որոնց ծագումը մեկ շատ բան կպատմի: Դա մեկ կհասցնի հին հռոմեական ժամանակաշրջանը, քանի որ ամիսների անունները հռոմեական ծագում ունեն:

Ի դեպ, ներկայումս գործածական դարձած ամիսների անունների հետ զուգընթաց կտրվեն նաև ամիսների հին հայկական անվանումները:

Ինչպես հայտնի է, շատ հեռավոր անցյալում հռոմեացիների Նոր տարին սկսվում էր գարնանից, և ամիսները պարզապես համարակալվում էին. առաջինը այն ամիսն էր, որը հիմա կոչվում է մարտ: Բայց ժամանակի ընթացքում միայն չորս ամիս մնացին թվական անուններով: Այսինքն յոթերորդից մինչև տասներորդը ներառյալ՝ սեպտեմբեր, հոկտեմբեր, նոյեմբեր և դեկտեմբեր. իհարկե, մարտը հաշվելով առաջին ամիսը: Մնացած ամիսները վերանվանվեցին, որոնցից հինգը կրեցին դիցաբանական անուններ և կոչվեցին անտիկ աշխարհի աստվածների՝ Յանուսի, Փեբրուարիոսի, Մարսի, Մաիյա (հունական Մայիոս) և Յունոնա անուններով: Ամիսներից ապրիլը կոչվեց ըստ տարվա եղանակի. նկատի ունենալով Իտալիայի ապրիլյան օրերը: Իսկ մյուս երկու ամիսներից մեկը կոչվեց Հուլիոս Կեսարի, մյուսը՝ նրա հաջորդ Օգոստոս կայսեր անունով:

ՀՈՒՆՎԱՐ. Տարվա սկիզբն է, իսկ ձմեռվա կեսը: Արևը համեմատաբար շուտ է բարձրանում և սփռում իր շողերը ամենուր:

Հունվարը այդպես է կոչվել ի պատիվ հռոմեական Յանուս աստծու: Սակայն այդ անունը մեկ անցել է հունարենից, արդեն որոշ փոփոխման ենթարկվելով՝ դառնալով հունվար:

Յանուսը հռոմեացիների մոտ համարվում էր ոչ միայն տարվա և ժամանակի շարժիչ աստվածը, այլև ելքը և մուտքը կարգավորողը: Նա պահապանն էր տան դռան և քաղաքի դարբասների: Ըստ հռոմեացիների, ամեն ինչ սկսվում էր նրանով: Հարուստ



Փետրվար

հռոմեացիները նրա կիսանդրիով զարդարում էին իրենց մուտքը և քաղաքի դարբասները:

Յանուսը պատկերվում էր երկու դեմքով: Մի դեմքով նայու էր առաջ, իսկ մյուսով՝ ետ: Այ խորհրդանշում էր անցյալն ու ա պագան: Յանուսի մի ձեռքին բա նալի կար, իսկ մյուսում՝ գայի սոն: Դա խորհրդանշում էր այն որ նա բանալիով բացում էր տ ների դռներն ու քաղաքի դարբասները, իսկ գայիսոնը հովանավորելու նշան էր:

Երբ ընդունվեց համաշխարհա յին օրացույցը և հունվարն էլ հա մարվեց տարվա առաջին ամիս իսկ նրա առաջին օրը՝ Նոր տա րի, Յանուսին նվիրված ամս առաջին օրվա տոնակատարու թյունը ձուլվեց Նոր տարվա տո



Մարտ

հետ: Այդ օրը ոչ ոք իրավունք չուներ աղմկելու, հայհոյելու, վիճելու: Ասում էին, դրա համար Յանուսը կբարկանա և մարդկանց վատ տարի կուղարկի:

Հայկական տոմարում հունվարը համընկնում է **արաց** ամսի հետ: Դա այր բառաձևից է:

ՓԵՏՐՎԱՐ. Ձմռան վերջին ամիսն է: Փետրվարը ըստ մի բացատրության իր անունը ստացել է հին հռոմեական չար աստված Փեբրուարիոսից:

Մեր թվարկությունից 46 տարի առաջ Հուլիոս Կեսարի կատարած օրացույցի բարեփոխումից հետո փետրվարը դարձավ երկրորդ ամիսը և ուներ 29 օր: Հետագայում

ամիսներից մեկը ի պատիվ Հուլիոս Կեսարի կոչվեց հուլիս, իսկ դրան հաջորդող օգոստոս ամիսն էլ՝ Օգոստոս կայսեր պատվին: Բայց օգոստոսն ուներ միայն 30



Մայիս

օր, իսկ հուլիսը՝ 31: Մի բան, որ ընդգծում էր Կեսարի գերականգությունը Օգոստոս կայսեր նկատմամբ:

Որոշվեց մեկ օր վերցնել փետրվարից և ավելացնել օգոստոս ամսվա օրերի թվին: Այսպիսով փետրվար ամսին, որը կապված էր հռոմեական մահվան աստծո անվան հետ, մնաց 28 օր: Միայն նահանջ տարին է մեկ օրով ավելանում և դառնում 29 օր:

Այդ անունը հայկական տոմարում կոչվել է **մեհիկի** կամ **մեհեկան**: Դա պահլավերենից է: Այդ ամսին մեծ տոնախմբություն էր կատարվում ի պատիվ Միհրի, որը կրապաշտական պարսիկների աստվածն էր: Նա մարմնավորում էր արեգակը և կրակը: Միհրի պաշտամունքը Պարսկաստանից անցավ Հայաստան: Միհրին նվիրված տաճարներն էլ կոչվում էին մեհյան:

ՄԱՐՏ. Գարնան առաջին ամիսն է, տարվա առավոտը: Օրերը սկսում են շուտ լուսանալ, ուշ մթնել: Արթնանում է բնությունը, որը կարծես թե բախտավորություն և ուրախություն է ճառագայթում և շոյում մեր հոգին: Սակայն այս ամսվա անունը բնավ էլ սականան չի նրան: Մարտ անունը կապված է հին Հռոմի պատերազմի աստված Մարսի անվան հետ: Ի դեպ, չնայած հռոմեացիները հույներից փոխ առան նրանց կրոնն ու դիցաբանությունը, բայց նույն այդ հույների դիցաբանական անունները հռոմեացիների մոտ այլ կերպ էին կոչվում: Մարսը հույների Արես աստվածն էր, որն ամենահարգված և փառաբանված աստվածներից էր: Նրա տոնը հանդիսավոր նշվում էր այն հրապարակում, որը կոչվում էր Մարսյան դաշտ: Մարսին առանձին տաճար էր նվիրված:

Մինչև Գրիգորյան տոմարի գործածությունը մարտը եղել է հռոմեական օրացույցի առաջին ամիսը:

Հայկական անունն էր **արեգ**:

ԱՊՐԻԼ. Անվան ծագումը գալիս է լատիներենից: Առաջացել է լատիներեն ապրիկարե բառից, որ նշանակում է թավալվել արևի տակ, արևակեկ լինել, թխանալ: Դա բնորոշ է Իտալիայի ապրիլյան օրերին, որտեղ այդ ամսին արդեն տաք է լինում: Այնինչ այդ ամսին մեկ մոտ արևը, ձյունը և անձրևը փոփոխակի են: Օրական՝ յոթ եղանակ, ու չգիտես, թե որին հավատաս:

Ապրիլը համապատասխանում է հին հայկական տոմարի **ահեկան** ամսին:

ՄԱՅԻՍ. Գարնան վերջին ամիսն



Հունիս

է. հիանալի և գեղեցիկ օրեր: Փետրավոր ամպերն են լողում երկնքում: Մայիս ամիսը նվիրված է հռոմեացիների Մահյա (հունարեն Մայիոս) աստվածուհուն, որը

*ԱՐՄԻՆԵ ԿԱԼԵՆՑ*

ՀԱԼԵՊ





Հուլիս

համարվում էր Մերկուրիի մայրը, Ատլանտի դուստրը:

Մաիյա աստվածուհու տոնը նշվում էր մայիս ամսին և կոչվում էր սիրուն մայիս: Նրա պատվին մայիսի մեկին մեծ կռհաբերություններ էին մատուցում:

Հին հայերի մոտ կրել է **մարերի** անունը, որը պահլավերեն նշանակում է տարվա կես:

ՀՈՒՆԻՍ. Ամառվա առաջին ամիսն է: Որոտում է կայծակը, աղմկում է անձրևը: Պարտեզները կարդարվում են ծաղիկներով, իսկ լեռներն ու դաշտերը՝ առատ խոտով:

Հունիսը նվիրված էր Յունոնա աստվածուհուն, որը Յուպիտերի կինն էր և կանանց ու ընտանեկան կենցաղի հովանավորողը:

Հայկական անունն է **մարգաց**. պահլավերենում նշանակում է թռչունների թխսի ամիս:

ՀՈՒԼԻՍԸ. Ամռան հրաշագեղ



Օգոստոս

ամիսն է: Վատ եղանակը հատուկ չէ նրան: Հուլիսը այդպես է կոչվում ի պատիվ Հուլիոս Կեսարի, որը հին Հռոմի կայսրերից մեկն էր: Նա եղել է խոշոր գործիչ, մեծ կորավար և գրող:

Հին հայերենում այդ ամիսը կոչվել է **հրոտից:**

ՕԳՈՍՏՈՍ. Ամռան վերջին ամիսն է, իսկ ոսկե աշնան նախադուռը: Օգոստոսն իր անունը ստա-



Հոկտեմբեր

ցել է ի պատիվ հռոմեական Օկտավիանոս կայսեր, որը հետագայում ստացավ օգոստոս տիտղոսը (նշանակում է վսեմաշուք):

Այս ամիսը հին հայերի մոտ կոչվել է **նավասարդ:** Սանսկրիտերեն նավասարդա անունը ունեցել է Նոր տարվա իմաստ: Նոր տարին սկսվում էր նավասարդի մեկից, որը համընկնում է ներկայիս օգոստոս ամսին:

Նավասարդ անունը կազմված է երկու բառից: Նավա-նոր, սարդ-տարի, այսինքն նոր տարի:

Նավասարդի օրերին հասնում են խաղողը, տանձը, խնձորը և հայկական հողի ու ջրի այլ բարիքներ, որոնք մարդկային կյանքին երջանկություն են տալիս: Նավասարդի տոներին, երկրի տարբեր մասերից Բագրևանդի գավառն էր գալիս մեծ բազմություն: Տոնը շուքով նշվում էր Բագավանում, որտեղ գտնվում էին հեթանոս հայերի մեհյանները: Բագավանը համարվում էր հայերի սրբավայր քաղաքը Բագրևանդում, այնպես ինչպես Աշտիշատը՝ Տարոնում:



Դեկտեմբեր

Նավասարդի օրերը հաճախ տեվում էին մինչև օգոստոսի 15-ը: Նավասարդի տոնախմբությունը Բագավանում կատարելուց հետո շարունակում էին Աշտիշատում (Տարոնում), ուր հունական օլիմպիականի նման կազմակերպում էին խաղեր, մրցություններ: Հատկապես արիեստի, արվեստի և քաջության մրցություններ:

ՍԵՊՏԵՄԲԵՐ. Աշնան առաջին ամիսը. եզրափակվում է ամառը: Սկսվում է ոսկե աշունը՝ պարզ և թափանցիկ երկնքով:

Սեպտեմբերը հռոմեացիների մոտ նշանակում է յոթերորդ ամիս (սեպտ-յոթ):

Հին հայերի մոտ կոչվել է հոռի:

ՀՈԿՏԵՄԲԵՐ. Աշնան երկրորդ ամիսը: Ավարտվում է այգեկութը:

Հոկտեմբեր լատիներեն օկտո բառից է, որը նշանակում է ութ: Ութերորդ ամիսը հռոմեացիների մոտ:

Համապատասխանում է հին հայերի **սահմի** ամսին:

ՆՈՅԵՄԲԵՐ. Աշնան վերջին ամիսն է, երբ օրերը կարճանում են, լույսը քչանում է: Լուսաբացն ու մթնշաղը կարծես իրար են հանդիպում ամպամած օրվա կեսին:

Լատիներեն նովեմբեր՝ իններորդ: Սա հռոմեացիների իններորդ ամիսն է մարտից հաշված:

Հին հայկական տոմարում կոչվել է **տրե,** այսինքն չորրորդ ամիս: Սա կապված է Տիր աստծու հետ, որը պահլավների, ինչպես նաև հայերի աստվածներից մեկն էր: Ի դեպ, այստեղից էլ՝ Տրդատ, այսինքն՝ Տիրի կամ Տրեի տրված:

ԴԵԿՏԵՄԲԵՐ. Ձմռան առաջին ամիսն է: Լատիներեն կոչվել է դեցեմբեր, այսինքն տասներորդ ամիս:

Սակայն հին հռոմեացիների տասներորդ ամիսը ըստ կարգի տասներկուերորդը դարձավ, երբ առաջին ամիսը հունվարը հաշվեցին: Բայց նրա անունը այնպես էլ տասներորդ մնաց:

Համապատասխանում է հին հայկական տոմարի **քաղոց** ամսին:




ԿԻՐԱԿՈՍ ՕՀԱՆՅԱՆ

Աշխարհագրական գիտությունների թեկնածու

1908 թ. հունիսի 30-ին Արևելյան Սիբիրի Պոդկամեննայա Տունգուսկա գետի ավազանում, երկրակեղևին հասցված ուժեղ հարվածից առաջ եկավ ահավոր պայթյուն: Հարվածի տեղում, շուրջ 1000 կմ. և ավելի տարածության վրա լսելի եղան ամպրոպային թնդյունի մի քանի ճայթյուններ: Տասնյակ կիլոմետր հեռավորության վրա տապալվեց դարավոր անտառը: Հարվածի բուն կենտրոնում առաջացավ վիթխարի հրդեհ, իսկ նրա շուրջը հողմահարված ծառերը փռվեցին գետին, կատարներով կենտրոնի հակառակ ուղղությամբ:

Բնության ահավոր այս երևույթի մասին մարդիկ սկզբում չկարողացան ճիշտ բացատրություն տալ, իսկ ավելի ուշ նրա շուրջն առեղծեցին ֆանտաստիկ պատմություններ: Անգամ մեր օրերում (սովետական ժամանակաշրջանում), ամսագրերում երևացին հոդվածներ, որտեղ հիպոթեզային ձևով այն միտքն էր արտահայտվում, որ այդ պայթյունը բուն երևույթին առաջացել է միջմոլորակային տիեզերանավի խորտակման հետևանքով: Կարծիք էր հայտնվում այն մասին, որ հավանաբար ինչ-որ մոլորակի վրա նույնպես ապրում են մարդիկ, որոնք զարգացման ավելի բարձր մակարդակի վրա գտնվելու պատճառով, հնարավորություն են ունեցել, օգտագործելով ատոմային էներգիան, տիեզերանավ ուղարկել մեր Երկիրը: Բայց մեր Երկրի մոտ անհաջող վայրէջք են կատարել և կամ մեզ անհայտ մի այլ պատճառով տեղի է ունեցել տիեզերանավի խորտակումը:

Այս հիպոթեզը հիմնավորում էին Ճապոնիայում առաջին անգամ բաց թողած ատոմային ռումբի պայթման հետևանքով: Ատոմային այդ ռումբի պայթյունը առաջացրել էր ավերածություններ, անտառի տապալման և մթնոլորտային երևույթի մոտավորապես այն նույն պատկերը, ինչ որ սիբիրյան պայթյունը: Սակայն այս ամենը արվում է որպես հիպոթեզ: Ավելին՝ արեգակնային համակարգությունում բացառվում է մեր Երկրից բացի մեկ այլ մոլորակի վրա մարդու գոյությունը: Իսկ մարդու գոյությունը արեգակնային մի այլ համակարգությունում մեզ դեռևս հայտնի չի

Իրականում վաղուց արդեն հաստատված է, որ Տունգուսկայի պայթյունը առաջացել է Երկրի վրա վիթխարի մեծությամբ երկնաքարի (մետեորիտի) վայր ընկնելուց: Հսկայական այդ երկնաքարը վաղուց գիտական աշխարհին հայտնի է Տունգուսյան մետեորիտ անունով: Ճիշտ է, թեպետ մինչև այժմ այն դեռևս չի հայտնաբերվել (նրա ուսումնասիրությամբ մոտ քսան տարի զբաղվել է Լ. Ա. Կուլիկը), բայց ենթադրվում է, որ այն ունեցել է մի քանի հազար տոննա կշիռ, որի հետևանքով վայր ընկնելու ժամանակ մի քանի տասնյակ մետրով խրվել է Երկրի կեղևի մեջ և ծածկվել հողով: Չի բացառվում և այն, որ ուժեղ պայթման հետևանքով երկնաքարը հավանաբար ոչնչացել է:

Մետեորիտները Երկրի վրա վայր են ընկնում բավականին հաճախ: Յուրաքանչյուր տարի նրանց թիվը հաշվվում է հազարներով: Ընդ որում հաճախ Երկրի մթնոլորտային շերտը ներթափանցող խոշոր մետեորիտային շիկացած զանգվածը բաժանվում է բազմաթիվ մասերի և Երկրի վրա թափվում է ինչպես «անձրև»:

Մետեորիտներին ոչ միշտ կարելի է տարբերել



սովորական քարերից: Այդ առավելապես այն պատճառով, որովհետև երկնային բոլոր մարմինները, որոնց ներկայացուցիչներն են համարվում մետեորիտները, սովորաբար կազմված են այն նույն նյութերից, ինչ որ Երկիրը: Սակայն պատահում են նաև այնպիսի մետեորիտներ, որոնց տարրերի միացությունները Երկրում հայտնի չեն: Այդ նշանակում է, որ նրանք առաջացել են այլ պայմաններում, քան Երկրի կեղևը:

Մետեորիտների չափերը մի քանի գրամից մինչև մի քանի տասնյակ տոննայի են հասնում:

Ամենից մեծ մետեորիտներից մեկը, որը հայտնաբերվել է 1920 թ. Հարավային Աֆրիկայում, ունի 60 տոննա կշիռ:

Շատ խոշոր է եղել նաև Սովետական Միության Հեռավոր Արևելքում՝ Սիխոտե-Ալին լեռնաշղթայի մոտ 1947 թ. փետրվարի 12-ին վայր ընկած մետեորիտը: Նրա անկման տեղում ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի գիտական էքսպեդիցիան հայտնաբերել է 100-ից ավել ձագարաձև փոսեր, որոնցից ամենամեծը ունեցել է 6 մետր խորություն և 28 մետր լայնություն: Միաժամանակ փոսերում գտել են երկաթի բազմաթիվ բեկորներ, որոնց ընդհանուր քաշը եղել է մոտ 25 տոննա:

Մետեորիտների հայտնաբերումը և նրանց ուսումնասիրությունը ունի բացառիկ գիտական արժեք: Այդ հատկապես այն պատճառով, որ նրանք հանդիսանում են երկնային մարմինների այն միակ նյութերը, որոնք մատչելի են անմիջական գործնական ուսումնասիրությունների համար: Այդ նպատակով մեզ մոտ՝ ՍՍՌՄ-ում ակադեմիային կից ստեղծված է մետեորիտների ուսումնասիրության հատուկ կոմիտե:

## ԳԻՇԵՐՆ ԱՆՏԱՌՈՒՄ

### ՆԱԶԱՐԵԹ ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

*Անտառն իր շունչը պահել է խորունկ,*
*Քամին քնել է ձորակում մոտիկ,*
*Ու գիշերային խաղաղ բացատում*
*Դեռ պտտվում է մի լուսատտիկ:*

*Երկինքը մութ է, աստղ չի երևում,*
*Անտառ են մտել երազն ու քունը.*
*Բուն մանկան նման լալիս է հեռվում,*
*Խզում անտառի խաղաղությունը:*




Սառնորակ ու հորդահոս աղբյուրներ շատ կան Հայաստանում: Արագածը անուշահամ, զանգակ աղբյուրների հայրենիքն է: Նրա լանջերից բխում են 324 ստորերկրյա աղբյուր, որոնք առաջացրել են Մեծամոր կամ Այղր լիճը:

Ապարանում, Համբերդի և Մանթաշի ձորերում զանգակ աղբյուրներ շատ կան, որոնք գալիս են Արագածի գագաթներից: Արագածի ծնունդն են Շղարշիկ, Ոսկեթաս, Կոշ, Ահագչի գյուղերի հռչակավոր աղբյուրները, որոնցով իրավամբ հպարտանում են տեղի բնակիչները:

Հայաստանի յուրաքանչյուր շրջան ունի իր նշանավոր աղբյուրները:

Աշխարհում շատ քիչ կարելի է գտնել Երևանի սառնորակ, առողջարար ջրերից: Դրանք սկիզբ են առնում Էլառի շրջակայքի քառասուն աղբյուրներից: 60 տարի է, որ դրանք հիանալի ջուր են մատակարարում մեր մայրաքաղաքին: Սակայն այս հորդառատ աղբյուրները ներկայումս չեն բավարարում քաղաքի բնակչության ու արդյունաբերության պահանջները, դրա համար էլ Երևանի արվարձանները ու արդյունաբերական շատ ձեռնարկություններ օգտագործում են նաև Արզնու խմելու ջուրը:

Դարավոր պատմություն ունեն Ջորաղբյուրի, Ողջաբերդի, Սանահինի, Գառնիի, Գեղարդի սքանչելի աղբյուրները:

Ո՞վ չի խմել Ծաղկաձորի, Ջրառատի (Ռնդամալ) կաթնաղբյուրների ջրերը, որոնք բխում են Ալիբեկ լեռան բարձրավանդակից: Հալյա Վանաձորի, Վարդաբլուրի, Կամո քաղաքի, Գետաշենի, Ակունքի սառն ու վճիտ ջրերը, որոնք առատ են ու առողջարար: Սովետական Հայաստանում կա 10 հազարից ավելի անուշահամ աղբյուր:

— Գնացի հեռանկներով, վերադարձա առանց հենակների,—ասաց ընկերս՝ ուրախության ժպիտը դեմքին:

Ես չհավատացի աչքերիս: Մի՞թե աշխարհում հրաշքներ են լինում: Հողերի ու մկանների անտանելի ցավից ընկերս կռացել ու չորացել էր: Նա քաղաքում հենակներով հազիվ էր քայլում, իսկ այժմ վերադարձել է Ջերմուկից լրիվ առողջացած:

Սակայն մեր հայրենի բնությունը հարուստ է նաև բազմաթիվ այլ հանքային աղբյուրներով:

# ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ

Արզնին դարձել է մեր երկրի նշանավոր առողջարաններից մեկը, որովհետև նրա հանքային ջրերը իրենց ֆիզիկա-քիմիական բաղադրությամբ դասվում են հիդրոկարբոնատային ջրերի առաջին կարգում։

Եղե՞լ եք Բլդան-Չայ գետի կիրճում, որ Դիլիջանից մոտ 5 կիլոմետր հեռու է։

Բլդան-Չայի հանքային աղբյուրների ջրերը, «Դիլիջան» մակագրությամբ, շշերով վաճառվում են մեր քաղաքներում ու գյուղերում։

Սևան գյուղում նույնպես կան հանքային աղբյուրներ, որոնց ջրերը տարածված են ամենուրեք։

Հանքային հորդահոս բազմաթիվ աղբյուրներ կան Արարատ ավանում և Սարի-Բուլաղ լեռան հարավային լանջում, Վեդի գետի վտակի ափերին։

Արարատի հանքային ջրերում բուժվում են հոդերի, պերիֆերիկ նյարդային սիստեմի, նյութափոխանակության հիվանդություններով տառապող հիվանդները։

Զարգացման լայն հեռանկար ունի Հանքավանը, որ մոտիկ ապագայում դառնալու է լավագույն բուժիչ հանգստավայրերից մեկը։ Այստեղի հանքային աղբյուրները լրիվ ուսումնասիրված են և համարվում են բարձրորակ հանքային ջրեր։

Լսե՞լ եք Կենսալիի մասին։ Հրազդան գետի ափին,



Ավազան գյուղի մոտ են Կենսալիի հանքային ջրերը, որոնք վաղուց հայտնի են տեղացիներին և կոչվում են Սալամաթ։

Հանքային ջրերի առատ աղբյուրներ կան Սիսիանի շրջանի Բազարչայ, Մարտունու շրջանի Լիճք, Գորիսի շրջանի Քարաշեն, Քարահունջ, Տաթև, Ստեփանավանի շրջանի Կաթնաղբյուր, Յաղդան գյուղերում, ինչպես նաև Դվինում, Աղինում, Մեղրիում և Մարտունիում։

Սովետական Հայաստանում հայտնի են տարբեր բաղադրության ավելի քան 400 հանքային աղբյուրներ։

Այդ աղբյուրները, որոնք կազմում են հայրենի բնության հարստությունը, պետք է ճանաչել ու պահպանել։

*ԱԲՐԱՀԱՄ ԳՐԻԳՈՐՅԱՆ*

# ԳԱՆՁԵՐԻ ԿՂԶԻՆԵՐԸ

Չկա մի գրագետ մարդ, որ կարդացած չլինի Ստիվենսոնի «Գանձերի կղզին» գիրքը: Եվ բոլորը համոզված են, որ գանձերի կղզին գրողի երևակայության արդյունք է, որ իրականում այդպիսի կղզի չկա: Բայց ոչ, այդ կղզին կա, գոյություն ունի, գտնվում է Խաղաղ օվկիանոսում և կոչվում է Կոկոս: Հեքիաթային գանձերն էլ հնացած չեն: Դեռ շատ վաղուց ծովահեններն այստեղ էին պահում իրենց թալանած հարստությունը: Կղզու վրա թաքցրած գանձերը տասնյակ միլիոն դոլլարի արժողություն ունեն: Եվ այդ գանձերը մինչև այսօր էլ այնտեղ են:

Հիմա կհարցնեք, թե ինչո՞ւ այդ միլիոնները չեն քանդում-հանում: Այդ հարցը շատերին է հետաքրքրել և շատերն են գնացել կղզու հարստությունները որոնելու: Ո՞վ ասես չի եղել Կոկոս կղզու վրա ծովահենների գանձերը գտնելու հույսով: Ամեն րոպե նրանք սրրտի թրթիռով սպասել են, թե ուր որ է քլունգը խուլ կղնգա՝ դիպչելով ոսկուն կամ թանկարժեք սընդուկի կափարիչին:

Այստեղ փոս է փորել նաև Ֆրանկլին Ռուզվելտը, որն հետագայում դարձավ Ամերիկայի պրեզիդենտը: Բայց ոչ նա, ոչ էլ մյուս գանձ որոնողները չկարողացան գտնել հորած հարստությունները: Կղզին համառորեն լռում է և ծովահենների գաղտնիքը բաց չի անում: Մինչև այսօր էլ շարունակվում են անհաջող որոնումները:

Բայց ահա Խաղաղ օվկիանոսում գոյություն ունի նաև մի ուրիշ կղզի, ուր ավելի պակաս հարստություններ չկան, չնայած այդ հարստություններն ուրիշ կարգի են: Խոսքը վերաբերում է Սախալին կղզուն:

Նա, ով ապրում է Ռուսաստանի միջին շրջանում, տեսած կլինի առանձնապես ոչնչով աչքի չընկնող արջապպուկ կոչվող բույսը: Արջերն, ինչ խոսք, նրանից պյուկ չեն սարքում, բայց երեխաները այդ բույսի ցողունից հիանալի խաղալիք են պատրաստում, որի միջով բաց թողած ջրի շիթը մինչև տասը մետր է թռչում:

Այ, հենց այդ խոտը Սախալինի վրա այնպիսի չափերի է հասնում, որ արժե դրան ոչ թե արջապպուկ, այլ փղի պյուկ անվանել: Նույնիսկ ձիով հնարավոր չէ անցնել խիտ աճած արջապպուկի միջով:

Կղզու վրա քիչ չեն նաև ուրիշ գիգանտ բույսեր: Սախալինի վայրի հնդկացորենի բույսը ավելի քան երեք մետր բարձրություն է ունենում: Հնդկացորենի «անտառում» նույնիսկ կարելի է կորչել. քիչ բան չէ, այդ խոտը մարդու գլխից վերև էլ մի մարդաբոյ բարձր է լինում:

Վայրի հնդկացորենը հիանալի անասնակեր է, և անցյալ դարում այդ հսկա խոտի մասին լուր տարածվեց Եվրոպայում: Նրանով հետաքրքրվեցին շատ գյուղացիներ, իսկ Ֆրանսիայում իսկական «հնդկացորենային տենդ» սկսվեց: Սախալինյան հնդկացորենի սերմը առասպելական գնով էին ձեռք բերում: Բայց մի քանի տարի անցավ և մարդիկ դառնորեն հիասթափվեցին: Հեռավոր կղզուց բերված հնդկացորենը նույնիսկ Եվրոպայի ամենալավ հողերում շատ ցածր ու նվաղ էր աճում:

Ի՞նչն էր պատճառը, որ հսկան հանկարծ խեղճ թզուկ դարձավ: Այդ հարցին ոչ ոք չէր կարող պատասխանել: Մյուս հսկա բույսերը նույնպես կղզուց տեղափոխվելով, իսկույն «մոռանում էին», թե ինչպիսին են եղել Սախալինում, և իրենց հասակով ամենևին էլ պարծենալ չէին կարող: Բայց դրա փոխարեն մայր ցամաքից կղզի տեղափոխված սիսեռը, լոբազգիները հասնում էին մինչև երկու մետր բարձրության, նրանց տերևները, ցողունն ու ճյուղերը չտեսնված մեծ, հաստ ու հյութեղ էին դառնում: Օրինակ, սխտորն այստեղ հեկտարից երեք հարյուր ցենտներ բերք է տալիս: Նրա տերևների ծայրերին ամեն մարդ չի կարողանա ձեռք հասցնել:



Նկ. ՎԱՆԻԿ ԿԱԺՈՅԱՆԻ

Իսկ Սախալինում աճեցրած կաղամբի շատ գլուխներ մի տեղից մյուսը տանելու համար ստիպված են տակառի նման գլորել: Դրանց քաշը մինչև 30 կիլոգրամի է հասնում: Հեկտարից մինչև երկու հազար ցենտներ բերք է տալիս այդ գերկաղամբը:

Մի՞թե սա հրաշք չէ: Բայց ինչո՞ւ է այդ հրաշքը միայն Սախալինում տեղի ունենում: Ինչո՞ւ այդ հսկա կաղամբը կամ սխտորը չըպետք է աճի Լենինգրադի կամ Մոսկվայի մարզերում կամ, ասենք, Կուբանում:

Գիտնականները գտնում են, որ սախալինյան հրաշքի պատճառը պետք է փնտրել կլիմայի առանձնահատկության և կղզու ինքնատիպ կառուցվածքի մեջ:

# ԿԱՊՈՒՅՏ ԵՐԱԿՆԵՐ

ԳՐԻԳՈՐ ԱՎԱԳՅԱՆ

*Աշխարհագրական գիտությունների թեկնածու*

*«Ջուրը կյանք է»: Այս միտքը տարածված է բոլոր չորային երկրներում, որտեղ երաշտը պատմության ընթացքում մարդկանց հաճախ մատնել է սովի: Մարդիկ բնության այդ քմահաճ խաղերին չենթարկվելու համար ստեղծել են արհեստական ոռոգման միջոցներ:*

*Հայաստանը լինելով հարավի չոր երկիր, նույնպես արհեստական ոռոգման մշտական անհրաժեշտություն է զգացել: Եվ պատահական չէ, որ Հայաստանը աշխարհի այն սակավաթիվ հնագույն երկրներից է, որտեղ մարդը առաջին անգամ սկըսել է ջուրն օգտագործել ոռոգման նպատակներով:*

*Ունենք այդպիսի շատ վկայություններ: Ահա դրանցից մի քանիսը: Տակավին 2500—3000 տարի առաջ մեր նախնիները տեխնիկայի այն ժամանակվա պայմաններում, երբ բոլոր աշխատանքները կատարում էին ձեռքի ուժով միայն, լեռ ապառաժների միջով փորելով թունելներ՝*

անց էին կացրել Սարդարաբադի (Հոկտեմբերյան), Աշտարակի, Դալմայի (Երևան) և այլ ջրանցքներ, որոնք այսօր էլ զարմանք են պատճառում իրենց համարձակ և ապշեցուցիչ կառուցումներով:

Հին ջրանցքների և ոռոգողական աշխատանքների մասին մեզ պատմում են բազմաթիվ հուշարձաններ, սեպագիր արձանագրություններ և այլ վկայություններ, որոնք առատորեն ցրված են մեր ընդարձակ լեռնաշխարհում: Գեղամա լեռների դեպի Արարատյան դաշտն ուղղված լանջերի կատարամերձ շրջաններում հին-հին դարերից մեզ են հասել յուրօրինակ քար-վիշապներ, որոնք ծառայել են որպես ջրամբարների սեփականության խորհրդանշաններ: Գարնան անձրևային և ձնհալոցային ջրերը կուտակվել են այդ ջրամբարներում, որտեղից ամռան չոր շրջանում ջրանցքներով դրանք հոսել են Արարատյան դաշտի պապակ, ջրածարավ այգիներն ու ցանքերը:

Հայ ժողովուրդը, որի կյանքն անցել է հաճախակի կրկնվող ավերիչ պատերազմների մեջ, հենց որ խաղաղ շունչ է քաշել, կառուցել է նոր ջրանցքներ, նորոգել ավերվածները՝ ջանալով ազատվել բնության քմահաճույքներից:

1920 թ. Արևելյան Հայաստանի մի մասում սովետական կարգերի հաստատմամբ աշխատելու, խիզախելու, ստեղծելու ու կառուցելու միանգամայն նպաստավոր պայմաններ ստեղծվեցին մեր ժողովրդի համար: Եվ ընդամենը չորս և կես տասնամյակում կառուցվեցին մի քանի տասնյակ ջրանցքներ ու ջրամբարներ, ջրհան կայաններ, որոնց շնորհիվ ոռոգվող հողերի տարածությունը կրկնապատիկից ավելի է հիմա:

Եթե ինքնաթիռով վերևից դիտելու լինենք Արարատյան դաշտը, ապա կնկատենք կապույտ երակներ, որոնք սրտից դեպի մարմնի բոլոր մասերը տարածվող արյան երակների նման ցանցավորվում են այգիների, ցանքերի ու բանջարանոցների մեջ՝ դրանց տալով կենդանություն: Այնտեղ, որտեղ չի հասնում կապույտ երակը, այնտեղ կարծես վերջանում է կյանքը, փարթամ կանաչին հաջորդում են անկենդան, գորշ ու մերկ կղզյակները:

Այժմ մոտիկից ծանոթանանք այդ ջրանցքներից մի քանիսին:

Արարատյան դաշտի և Հայաստանի խոշորագույն ջրանցքներից է Հոկտեմբերյանի (Սարդարաբադ) ջրանցքը, որը կառուցվել է հազարամյակներ առաջ, մեր նախնիների՝ ուրարտացիների կողմից: Այդ ջրանցքը սկիզբ է առնում Արաքս գետից, որը գարնան ամիսներին հաճախ վարարում և քանդում ավերում էր ջրանցքի գլխամասը: Մարդիկ ստիպված ամեն անգամ հսկայական ջանքեր էին թափում այն կարգի բերելու համար, և դա հազարամյակներ շարունակ մինչև սովետական կարգերի հաստատումը: 1925—1930 թ.թ. Արաքսի վրա կառուցվեց խոշոր ամբարտակ: Այն վերջնականապես փրկեց ջրանցքի գլխամասը վարարումների ժամանակ ավերվելու վտանգից: Այժմ այդ ջրանցքը գործում է անխափան ոռոգելով ավելի քան 27 հազար հեկտար հողատարածություն, նախկին 17 հազար հեկտարի փոխարեն:

Սակայն Արարատյան դաշտի համար առավել մեծ նշանակություն ունեն Սևանի ջրերը:

Սևանը կարծես հսկա սիրտ լինի, որից սկիզբ առնող Հրազդանը գլխավոր երակի նման սնում է դեպի Արարատյան դաշտի չորս կողմերը ճյուղավորվող բազմաթիվ ջրանցքների: Ընդհանուր առմամբ Սևանի ջրերով ոռոգվում են 100 հազար հեկտար հողատարածություն, այսինքն՝ Հայաստանի ոռոգվող հողերի շուրջ 40 տոկոսը:

Սևանի ջրերով են սնվում Ստորին Հրազդանի՝ Արզնի-Շամիրամի առաջին հերթի և մի շարք այլ խոշոր ջրանցքները, որոնք հնարավորություն են տվել աչք շոյող անտառներով ծածկել Երևանը շրջափակող երբեմնի գորշ ժայռերը, Արզնիի ապառաժոտ բարձունքները: Այդ ջրերով կյանք են առել Եղվարդի սարահարթը և դրան հարակից ամայի վայրերը, ուր այժմ աճում են հայկական քաղցրահյութ և գեղասքանչ խաղողի վազերը, արևագույն ու արևահամ ծիրանի, դեղձի ծառերը: Նախկին այդ ամայի տարածություններում գոյացել են նոր, շքեղ բնակավայրեր, ինչպիսին է, օրինակ, Նոր Հաճնը:



Եվ այսպես, քայլ առ քայլ առաջ շարժվելով, կապույտ երակները հարստություն ու կյանք են սփռում իրենց շուրջը:

Նոր հնգամյակում՝ 1966—1970 թ.թ., 80 հազար հեկտարով կավելանա ոռոգվող հողերի տարածությունը: Այդ նշանակում է՝ հազարավոր տոննաներ բարձրարժեք խաղող, դեղձ, ծիրան: Այդ նշանակում է նոր բնակավայրեր նոր յուրացված հողերում:

# Ականատեսի ԱՉՔԵՐՈՎ



Սիրելի երեխաներ, տողերիս հեղինակը ավելի քան երկու ամիս գտնվում էր Մոսկվայում և մոտիկից դիտում մեր ժամանակի ուժեղագույն շախմատիստներ՝ աշխարհի չեմպիոն Տիգրան Պետրոսյանի և այդ կոչման հավակնորդ Բորիս Սպասսկու մրցախաղը: Եվ երբ «Պիոներ» ամսագրի խմբագրությունը առաջարկեց պատմել այդ հուզիչ մենամարտի մասին, մեծ հաճույքով ընդունեցի այն:

...Հունիսի 10-ին, Մոսկվայի էստրադային թատրոնի բեմահարթակի վրա, որտեղ շուրջ երկու ամիս լարված ու հետաքրքիր պայքար էր մղվում աշխարհի № 1 շախմատիստի կոչման համար, Տիգրան Պետրոսյանը կանգնած էր հուզված... հոգնած... բայց երջանիկ:

Տեղի էր ունենում մեծատաղանդ հայ շախմատիստի երկրորդ թագադրումը և աշխարհի չեմպիոնի հռչակման հանդիսավոր արարողությունը: Շախմատի միջազգային ֆեդերացիայի պրեզիդենտ Ֆոլկե Ռոգարդի հանձնարարությամբ փոխ-պրեզիդենտ Ջոն Պրենտիսը (Կանադա) դահլիճում ներկա գտնվողների բուռն ծափահարությունների ներքո Տիգրան Պետրոսյանին հանձնեց աշխարհի չեմպիոնի երկրորդ դափնեպսակը: Շախմատի արքան երկրորդ անգամ արժանացավ նաև չեմպիոնի ոսկե մեդալին:

...Ծաղկեփնջեր, բուռն ծափահարություններ, ողջույններ, «Տի՜գ-րա՜ն, Տի՜գ-րա՜ն, Տի՜գ-րա՜ն» երկարատև բացականչություններ... Իսկ երկրագնդի կրկնակի չեմպիոնը, երջանիկ ժպիտը դեմքին, շնորհակալություն էր հայտնում իր երկրպագուներին, որոնցից շատ քչերին էր միայն բախտ վիճակվել ներկա գտնվելու այդ մեծ իրադարձությանը:

Եվ այսպես, աշխարհի առաջնության XXV հոբելյանական մատչը պատմության գիրկն անցավ: Կանցնեն տարիներ, դարեր, և հինավուրց խաղի սիրահարները հաճույքով կվերլուծեն պատմական մենամարտի անկրկնելի պարտիաները, ստանալով էսթետիկական մեծ բավականություն:

Չորս հաղթանակ, երեք պարտություն, տասնյոթ ոչ-ոքի՝ այսպիսին էր աշխարհի չեմպիոնի արդյունքը: Հետաքրքիր է հիշել, որ Բոտվիննիկի հետ նախորդ մատչում (1963 թ.) Տիգրան Պետրոսյանը աշխարհի չեմպիոնի կոչումը նվաճեց 22-րդ հանդիպումից հետո: Նույնը կատարվեց և այս անգամ: 22-րդ պարտիայի ժամանակ Բ. Սպասսկին խաղաց 35. Թb8, սակայն չսպասելով մրցակցի պատասխանին (որովհետև իր դիրքը միանգամայն անհուսալի էր), ոտքի ելավ և հանդիսավորությամբ առաջինը շնորհավորեց Տ. Պետրոսյանին աշխարհի չեմպիոնի կոչումը պահպանելու կապակցությամբ: Եվ ահա հանդիսասրահը պայթեց ծափահարություններով, երկարատև ծափահարությունները դահլիճից անցան ճեմասրահ և ապա փողոց... Տիգրան Պետրոսյանը այդ օրը կրկնեց աշխարհահռչակ շախմատիստ Կապաբլանկայի օրինակը, որ թագակիր էր 1921—1927 թվականներին:

Իսկ այժմ համառոտակիորեն պատմենք, թե ինչպես էր ընթանում սպորտային պայքարը մատչում: Առաջին վեց հանդիպումները, ինչպես գիտենք, ավարտվեցին ոչ-ոքի արդյունքով: Եթե այդ ոչ-ոքիները «լեզու ունենային», ապա կասեին, որ բացի 6-րդ պարտիայից այդ հանդիպումները բնավ խաղաղ բնույթ չէին կրում, այլ հետևանք էին լարված ու համառ պայքարի: Հաջորդ, 7-րդ պարտիայում աշխարհի չեմպիոնը գեղեցիկ ոճով համոզիչ հաղթանակ տարավ, և հաշիվը դարձավ 4 : 3, հօգուտ Տ. Պետրոսյանի: Ի դեպ, նշենք, որ աշխարհի չեմպիոնը և շատ տեսաբաններ գտնում են, որ այդ պարտիան լավագույնն էր մատչում: Տիգրանը խաղամիջում սևերով ուժեղ գրոհ ձեռնարկեց մրցակցի արքայական թևում, իսկ վճռական պահին նա վստահորեն որակ զոհաբերեց: Երբ չեմպիոնի «հետևակը» շարժվեց առաջ, օղակի մեջ վերցնելով սպիտակ արքային, պարզ դարձավ նրա դիրքային գերակշռությունը: Գեղեցիկ էր նաև 10-րդ պարտիան, որն ավարտվեց Տ. Պետրոսյանի փայլուն հաղթանակով: Նա մեկը մյուսի հետևից զոհաբերեց իր նավակները, փոխարենը ստանալով երկու թեթև ֆիգուր: Այնուհետև «տվեց» ամենաթանկարժեք ֆիգուրը՝ թագուհին, հարկադրելով հավակնորդին դադարեցնել հետագա դիմադրությունը: Այս տպավորիչ պարտիայի վերջնախաղը էսթետիկական մեծ հաճույք պատճառեց հանդիսականներին:

Եվ այսպես, մատչի հաշիվը դարձավ 6 : 4 հօգուտ աշխարհի չեմպիոնի:

Մեկնաբանների մեծ մասը այն կարծիքը հայտնեցին, որ մրցության ելքը վճռված է: Չէ՞ որ չեմպիոնի կոչումը նվաճելու համար հավակնորդին անհրաժեշտ էին երեք անպատասխան հաղթանակներ: Դա գրեթե անիրագործելի էր նույնիսկ այնպիսի տաղանդավոր շախմատիստի համար, ինչպիսին է Բորիս Սպասսկին: Բայց մատչի պատկերը մի փոքր փոխվեց, չնայած չեմպիոնի կոչման պահպանման շանսերը Պետրոսյանի կողմն էր: 11-րդ պարտիայում ունենալով մեկ զինվորի առավելություն և խաղը շահելու հնարավորություններ, Տիգրանը անսպասելիորեն առաջարկեց ոչ-ոքի, որը և բնականաբար ընդունվեց մրցակցի կողմից: Սպորտային և հոգեբանական տակտիկայի տեսակետից չեմպիոնի վճիռը արդարացի պետք էր համարել իր «ակտիվում» նա ուներ երկու միավորի գերակշռություն, իսկ ուժերը վերջնագծի համար անհրաժեշտ էր պահպանել: Հաջորդ՝ 12-րդ պարտիայում պաշտպանության չգերազանցված վարպետ Տիգրանը ապացուցեց, որ սուր դրություններում նա իրեն զգում է հարազատ տարերքի մեջ: Մի շարք զոհաբերություններից հետո նա իրականացրեց տեսության մեջ «Ջրաղաց» կոչված գեղեցիկ կոմբինացիան (նման կոմբինացիա իրագործվել էր 1925 թվականին, Մոսկվայի միջազգային տուրնիրում, Տոռե-Լասկեր պարտիայում), սակայն գտնվելով ուժեղ ցայտնոտում, Տիգրանը ի վիճակի չեղավ այն տրամաբանական վախճանի հասցնել և ստեղծել շախմատային արվեստի հրաշակերտ: Ոչ-ոքի, սակայն ի՞նչ ոչ-ոքի: Պարտիայից հե-

տո աշխարհի էքս-չեմպիոն Մ. Տալը հայտարարեց. «Եթե այդ խաղը օրինաչափ վախճանի հասցվեր, ապա այն կարելի էր անվանել 20-րդ դարի մշտադալար պարտիան»:

Ըստ երևույթին դա իր ազդեցությունն ունեցավ հաջորդ պարտիայի վրա: Անվստահ վարելով 13-րդ պարտիան, 91-րդ քայլում Պետրոսյանը կրեց պարտություն: Սպորտային իր կենսագրության մեջ դա Բորիս Սպասսկու առաջին հաղթանակն էր Տիգրան Պետրոսյանի նկատմամբ: Այնուհետև հաջորդեցին հինգ անընդմեջ ոչ-ոքիներ, իսկ հերթական 19-րդ հանդիպմանը հավակնորդը շահեց ևս մեկ միավոր և մատչի հաշիվը հավասարվեց. 9,5 : 9,5: Հաջորդ՝ 20-րդ պարտիայում Տիգրանը ռևանշ վերցրեց նախորդ պարտիայի պարտության համար և կրկին անցավ առաջ՝ 10,5 և 9,5: Ընդամենը չորս պարտիա էր մնացել մինչև մեծ մարաթոնի վերջնագիծը, ընդ որում չեմպիոնի կոչումը պահպանելու համար Տիգրանին անհրաժեշտ էր 1,5 միավոր, այնինչ աշխարհի № 1 շախմատիստ կոչվելու համար հավակնորդին չորս հնարավորից պետք էր 3 միավոր: 21-րդ պարտիայում Սպասսկին սպիտակներով գրոհ կազմակերպեց չեմպիոնի արքայական թևի վրա (չէ՞ որ նրան միայն հաղթանակ էր պետք), սակայն Պետրոսյանը իրեն հատուկ սառնասրտությամբ կասեցրեց մրցակցի հարձակումները և վերստին՝ ոչ-ոքի: Դրամատիկական պահերով լի մնացած երեք հանդիպումներում Տիգրանը հավաքեց ևս 1,5 միավոր, չեմպիոնի կոչման հետ միասին հաղթանակ ձեռք բերելով մատչում:



Տիգրան Պետրոսյանը երկրորդ անգամ է արժանանում արքայական դափնեպսակին

Լուսանկարը՝ ՎԻԿՏՈՐ ԿԱՐԱԳԵՑՅԱՆԻ

Աշխարհի էքս-չեմպիոն, հոլանդացի գրոսմեյստեր Մ. Էյվեն դեռ մի քանի տարի առաջ ասել է. «Եթե Պետրոսյանը խաղա կոմբինացիոն ոճով, ապա նրա հետ առհասարակ շախմատ խաղալը անհնարին կլինի»: Ուզում եմ նշել, որ Տիգրանի չորս հաղթանակներն էլ տարվել են կոմբինացիոն ոճով և տակտիկական մտահղացումներով:

Մատչից հետո մամուլի բյուրոյի մեկնաբանները և գրոսմայստերները Տիգրանին անվանեցին «ռեկորդսմեն»: Եվ դա իրոք այդպես է: Վերջին 32 տարվա ընթացքում աշխարհի չեմպիոնները հավակնորդներին երբեք չէին հաղթել (չհաշված մատչ ռևանշները): Իսկ Տիգրանը հաղթելով Սպասսկուն, խախտեց այդ երկարամյա տրադիցիան:

Տ. Պետրոսյանը հավակնորդին հաղթեց 12,5:11,5 հաշվով, դա նշանակում է, որ ի դեմս Բ. Սպասսկու աշխարհի չեմպիոնը հանդիպեց միանգամայն արժանի ախոյանի: Պատահական չէ, որ հանդիսավոր փակմանը և եզրափակիչ պրես-կոնֆերանսում աշխարհի չեմպիոնը հայտարարեց. «Լիովին հնարավոր եմ համարում, որ 1969 թվականին տեղի կունենա Պետրոսյան—Սպասսկի մատչը: Դա միանգամայն ռեալ բան է»:

Պետրոսյանը և Սպասսկին էստրադային թատրոնի բեմահարթակի վրա անկիշում «հակառակորդներ» էին, իսկ առօրյա կյանքում՝ իսկական բարեկամներ: Հաճելի էր նկատել, որ խաղից անմիջապես հետո նրանք ընկերական մթնոլորտում վերլուծում էին հենց նոր ավարտված պարտիան և հաճախ կատակում...

...Ետևում են հուզիչ ապրումներով լի մոսկովյան օրերը: Աշխարհի կրկնակի չեմպիոն, ՍՍՀՄ գրոսմեյստեր, միջազգային գրոսմեյստեր, ՍՍՀՄ վաստակավոր վարպետ, Երևանի Բրյուսովի անվան մանկավարժական ինստիտուտի ասպիրանտ, մեր հայրենակից Տիգրան Վարդանի Պետրոսյանը ապրում է իր ստեղծագործական ծաղկման շրջանը:

Թանկագին երեխաներ, եկեք շնորհավորենք Տիգրա՛ն արքային՝ տարած նոր հաղթանակի համար, քաջառողջություն, ստեղծագործական և սպորտային նորանոր հաջողություններ մաղթենք նրան, ի փառս սովետական շախմատային արվեստի:

Ապրե՛ս Տիգրան, շա՜տ ապրես:

*ԱՆԴՐ. ՀԱԿՈԲՅԱՆ*

*Հայկական ՍՍՀ վաստակավոր մարզիչ, միջազգային կարգի դատավոր*



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

**Այս համարի հետ տրվում է անվճար հավելված՝ Հոկտեմբերիկների համար**




## ԽԱՉԲԱՌ

Ուղղահայաց: 1. Հնագույն բերդ և բնակավայր՝ Արմավիրի շրջանում: 3. Երկնային լուսատու: 4. Հեղուկ վառելիք: 7. Ածական: 8. Ինքնավար Հանրապետության մայրաքաղաք՝ Ուրալում: 10. Լենայի վտակներից: 12. Նավթի արդյունաբերության խոշոր կենտրոն՝ Հեռավոր Արևելքում: 14. Քաղաք՝ Բելոռուսական ՍՍՀ-ում: 16. Գետ՝ Կասպից ծովի ավազանում: 17. Միութենական Հանրապետության մայրաքաղաք: 18. Վոլգայի վտակներից: 20. Ինքնավար Հանրապետության մայրաքաղաք՝ Միջին Ասիայում: 22. Թռչուն: 23. Ինքնավար Հանրապետության մայրաքաղաք՝ Հյուսիսային Կովկասում:




Հորիզոնական: 1. Հացահատիկային կուլտուրա: 2. Մարզային կենտրոն՝ Ուկրաինական ՍՍՀ-ում: 4. Քաղաք՝ Էստոնական ՍՍՀ-ում: 6. Գիշերային գիշատիչ թռչուն: 7. Դերանուն: 9. Նշանավոր սառցադաշտ՝ Պամիրում: 11. Թել մանելու տնային գործիք: 13. Նավահանգիստ՝ Ուկրաինական ՍՍՀ-ում: 15. Գետ՝ Բալխաշ լճի ավազանում: 18. Քաղաք՝ Կարելական Ինքնավար Հանրապետությունում: 19. Լիճ՝ Միջին Ասիայում: 21. Պրիպյատի վտակներից:

Կազմեց ՄԻՔԱՅԵԼ ՆԱԶԱՐՅԱՆԸ
Երևան, № 20 դպրոց, 5-րդ դասարան


Խմբագիր Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱՐԽՈՒԴԱՐՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԴՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Գ. (պատասխանատու քարտուղար), ՄՆՁՈՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, Հեռախոսներ՝ 2-11-83, 2-59-06:

ՎՖ 06835: Պատվեր՝ 1074: Տպաքանակ՝ 22 150: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 30 VI. 1966 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91:

Գինը՝ 20 կ.

## ՆԿԱՐՉԱԿԱՆ ՎԻԿՏՈՐԻՆԱ

ՆԿԱՐՉԱԿԱՆ ՎԻԿՏՈՐԻՆԱ ՆԿԱՐՉԱԿԱՆ ՎԻԿՏՈՐԻՆԱ ՆԿԱՐՉԱԿԱՆ ՎԻԿՏՈՐԻՆԱ

## ԲԱՌԱՇՂԹԱ-ԽԱՉԲԱՌ

Բոլոր բառերն սկսվում և վերջանում են «Կ» տառով:

1. Կուրորտային վայր՝ Հյուսիսային Կովկասում: 2. Նավթային շրջան՝ Իրանում: 3. Մարզային կենտրոն՝ ՌՍՖՍՀ-ում: 4. Կոմիտասի երգերից: 5. Ոգելից խմիչք: 6. Միջին Ասիայում բնակվող ժողովուրդներից մեկի ներկայացուցիչ: 7. Պրիմատների կարգին պատկանող կենդանի: 8. Պովոլժիեում բնակվող ժողովուրդներից մեկի ներկայացուցիչ: 9. Հերոս պիոներ: 10. Դրամի միավոր: 11. Լեռնագագաթ՝ Կովկասյան լեռնաշղթայում: 12. Հացազգի կուլտուրա: 13 Թռչուն: 14. Քաղաք՝ Կանադայում: 15. Ալ. Շիրվանզադեի




պատմվածքներից: 16. Բարդածաղկավորների ընտանիքին պատկանող բույս: 17. Սևանա լճում ապրող ձուկ:

Կազմեց *ԱՇՈՏ ՀԱԼԱՋՅԱՆԸ*

### ԿԱՐՈ՞Ղ ԵՍ, ԳՏԻՐ

*Այս աքաղաղը կազմված է միանիշ թվերից: Գտիր ընդհանուր գումարը:*

*Առաջարկ՝ ԱԶԱՏ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ*





*Սա ֆրանսիական մեծանուն դերասանուհի Սամարիի դիմանկարն է: Ո՞վ է այս աշխատանքի հեղինակը, ի՞նչ ուղղության է պատկանում նրա արվեստը և ուրիշ ի՞նչ ստեղծագործություններով է նա հայտնի համաշխարհային կերպարվեստում:*



*Հայկական ճարտարապետության ինքնատիպ հուշարձաններից են քարակերտ կառուցումները: Դրանցից մեկը, որը կառուցված է 13-րդ դարում, գտնվում է Գեղամա լեռների մի նեղ կիրճում: Վանքի ցանկապատից անմիջապես հետո վեր է խոյանում եկեղեցին՝ իր հիասքանչ գավիթով, որը կպած է ժայռին: Բազմաթիվ խցեր փորված են ժայռի մեջ և բաղկացած են երկու հարկից:*

*Կենդանիների այս խմբաքանդակը գտնվում է ժայռափոր վանքի խցերից մեկում: Որտե՞ղ է գտնվում ճարտարապետական այդ հուշարձանը և ինչպե՞ս է այն կոչվում:*

Նկարները՝ ՎԱՐԴԱՆԻԿ ԱՃԵՄՅԱՆԻ

(Երևան, 8 տարեկան)








«ՊԻՈՆԵՐԻ» ՀԱՎԵԼՎԱԾ

ՀՈԿՏԵՄԲԵՐԻԿՆԵՐԻ ՀԱՄԱՐ



# Վլադիմիր Իլյիչ Լենին

Ն. Կ. ԿՐՈՒՊՍԿԱՅԱ

Սենյակի պատին կախված էր դիմանկարը։ Վանյան ասաց հորը.

— Հայրիկ, պատմիր ինձ նրա մասին։

— Իսկ դու գիտե՞ս, թե ով է նա։

— Գիտեմ, Լենինն է։

— Այո, Վլադիմիր Իլյիչ Լենինն է։ Մեր սիրելին, հարազատը, մեր առաջնորդը։

Դե, լսիր։ Ես երիտասարդ էի։ Այն ժամանակ մենք՝ բանվորներս, վատ էինք ապրում։ Աշխատանքը ծանր էր։ Աշխատում էինք վաղ առավոտից մինչև ուշ գիշեր, սակայն ապրում էինք սոված։ Մեզանից շատերն էին աշխատում գործարանում։ Գործարանի տերը Դանիլովն էր։ Նա չէր աշխատում, մեջք չէր կռացնում, բայց շա՜տ լավ էր ապրում։

Որտեղի՞ց էր նրան այդ ամենը։ Մենք աշխատում էինք նրա համար։ Նա մեզ քիչ էր վճարում աշխատանքի դիմաց, ուղղակի թալանում էր։ Մեր աշխատանքով հարստանում էր։ Նա գործարան ուներ, փող, մեքենաներ, իսկ մենք ոչինչ չունեինք, բացի մեր աշխատավոր ձեռքերից։

Եվ ահա մենք ստիպված էինք աշխատանքի գնալ նրա մոտ։ Միայն Դանիլովի գործարանում չէր այդպես։ Այդպես էր բոլոր գործարաններում ու ֆաբրիկաներում։

Գյուղում գյուղացիները նույնպես վատ էին ապրում։ Նրանք քիչ հող ունեին, իսկ կալվածատերերը՝ շատ։ Գյու-

ղացիները աշխատում էին կալվածատերերի համար։ Կալվածատերերը ապրում էին փառավոր, իսկ գյուղացիները՝ խեղճ։

Կալվածատերերն ու կապիտալիստները միատեղ էին։ Նրանց հետ էր նաև ամենամեծ, ամենահարուստ կալվածատերը՝ թագավորը։ Նա բոլորի տերն էր։ Նա այնպիսի կարգեր էր հաստատել, որը լավ էր միայն կալվածատերերի ու կապիտալիստների համար։ Իսկ բանվորների ու գյուղացիների համար այդ ձևով ապրելը շատ դժվար էր։

Վլադիմիր Իլյիչ Լենինը բանվորների ընկերն ու բարեկամն էր։ Նա ցանկանում էր փոխել բոլոր կարգերը։ Ուզում էր, որ նրանք, ովքեր աշխատում էին, ապրեին լավ։ Լենինը պայքարում էր աշխատավորների գործի համար։

Լենինը համախմբեց նրանց, ովքեր կանգնած էին բանվորների կողմը։ Որքան շատ համախմբվեցին, այնքան ամուր դարձավ աշխատավորների կուսակցությունը, կոմունիստների կուսակցությունը։ Կուսակցությունը տեսավ, որ առանց պայքարի ոչինչ չես հասնի։

Այդ բանը սկսեցին հասկանալ նաև բոլոր երկրների աշխատավոր ժողովուրդները։

Բանվորները սիրում էին Լենինին, իսկ կալվածատերերն ու կապիտալիստները՝ ատում։ Ցարական ոստիկանությունը նրան ձերբակալեց, բանտ նստեցրեց, աքսորեց Հեռավոր Սիբիր, ցանկանում էր նրան միշտ բանտում պահել։ Լենինը մեկնեց արտասահման ու հեռվից բանվորներին գրեց, թե ինչ է հարկավոր անել։ Իսկ հետագայում նորից եկավ ու ղեկավարեց ողջ պայքարը։

1917 թ. փետրվարին բանվորները զինվորների հետ միասին (այն ժամանակ պատերազմ էր) դուրս վռնդեցին թագավորին, իսկ 1917 թվականի նոյեմբերի 7-ին վռնդեցին նաև կալվածատերերին ու կապիտալիստներին։

Նրանցից խլեցին հողերը, ապա՝ գործարանները ու ֆաբրիկաները և սկսեցին հիմնել իրենց կարգերը։

Ոչ թե թագավորը և ոչ էլ կալվածատերերն ու կապիտալիստները, այլ իրենք

Նկ. ՎԱԶԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ



բանվորները ու գյուղացիները սկսեցին Սովետներում քննարկել ու վճռել իրենց գործերը։

Նորություն էր դա նրանց համար։ Լենինն ու իր կուսակցությունը բանվորներին տարան այդ դժվար ճանապարհով և նրանց օգնեցին կյանքը կազմակերպել նոր ձևով։ Լենինին վիճակվեց շատ աշխատել։ Նա այնքան հոգսեր ուներ։ Նրա առողջությունը վատացավ։ Եվ 1924 թ. Վլադիմիր Իլյիչ Լենինը վախճանվեց։

Շատ վշտացանք մենք, երբ մեռավ Լենինը, սակայն այն, ինչ նա է ասել, մենք երբեք չենք մոռանա։ Մենք աշխատում ենք ամեն ինչ անել այնպես, ինչպես խորհուրդ է տվել նա։ Աշխատանքը, կյանքը կազմակերպում ենք նոր ձևով։

*Թարգմ. ԼԻԴԱ ԱՆԱՆՅԱՆ*

# ԱՆԻԿՆ ՈՒ ՏԻԿՆԻԿԸ

*ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՏԱՐՈՆ*



Անիկն օրորում է
Փոքրիկ իր տիկնիկին.
—Քնիր դու, տիկնիկ իմ,
Լսիր քո մայրիկին:

Իզուր է Անիկը
Տիկնիկին համոզում,
Արթուն է տիկնիկը,
Քնել չի ուզում:



—Քնիր դու, տիկնիկ իմ,
Օրոր եմ երգում քեզ,
Աչիկներդ փակիր
Ու քնիր լուռ ինձ պես:



Եվ քնեց Անիկը
Օրորից իր անուշ,
Ու... քնեց տիկնիկն էլ
Գիշեր էր արդեն ուշ:

Ու տեսավ Անիկը
Երազում իր քնքուշ
Ննջել է տիկնիկը,
Քնել է մուշ-մուշ...

*Նկ. ՄԱՐՏԻՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ*

# ԱՄԱՌ

ՎՌԱՄ ՀՈՎՍԵՓՅԱՆ

Ես ամառն եմ,
Ներկեր ունեմ,
Հազար-հազար
Երգեր ունեմ,
Ինձ զարդարող
Ջեռքեր ունեմ,
Առատ-առատ
Բերքեր ունեմ։



Թե արևից
Զառնեմ ես հուր,
Գետ ու ջրից
Զառնեմ ես ջուր,
Էլ ո՞նց հասնեն
Մրգերը բյուր
Եվ արտերը
Ցորենաբույր։






ԱՐՍ. ՍԵԴՈՒԳԻՆ

ՆԿ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Տատիկը նստած պատշգամբում Միտյայի կարճն էր վերանորոգում։

ՄԻՏՅԱ — (Երգում է) *Պիոներ, րոպեն էլ մի կորցնի դու,*
*Ջերմ սիրով միշտ նայիր քո գործին։*
(Հորանջում է) *Դեհ, տատիկ, շուտ կվերջացնես։ Դու էլ ձգձգում ես ու ձգձգում... Մի փոքր բան էր, ի՞նչ կար այդտեղ։ Երկու ժամ է սպասում եմ։ Տղաները երեկ գետից ամբողջ ձուկը հանեցին։*

ՏԱՏԻԿ — *Ծերացել եմ, աղավնյակս, ծերացել եմ։ Էլ արագ աշխատել չեմ կարողանում։*

ՄԻՏՅԱ — *Իսկ ինձ շուտ է պետք։ Ես տղաներին խոստացել եմ գնալ։ Ես պիոներ եմ, չէ՞։*

ՏԱՏԻԿ — *Գիտեմ, գիտեմ, ձագուկս, որ դու պիոներ ես։* (Լսվում է հեծանիվի զանգ, դողերի շշյուն)։ *Ահա քո ընկեր Գրիշկան եկավ։*
(Ներս է մտնում Գրիշկան)։

ԳՐԻՇԿԱ — (շնչահեղձ լինելով) *Բարև ձեզ, տատիկ։*

ՏԱՏԻԿ — *Բարև, բարև, զավակս։*

ԳՐԻՇԿԱ — *Միտյա, դու ինձ բարեկամ ես, չէ՞։*

ՄԻՏՅԱ — *Իհարկե։*

ԳՐԻՇԿԱ — *Դեհ, այդ դեպքում օգնիր։ Կես ժամ հետո սկսվելու է ֆուտբոլի խաղ՝ Սուսնովի փողոցի և Կոլտնտեսային Նրբանցքի տղաների միջև։*

ՄԻՏՅԱ — *Իսկ ես ի՞նչ կապ ունեմ դրա հետ։*

ԳՐԻՇԿԱ — Հասկանու՞մ ես, ֆուտբոլի գնդակը ծակվել է, իսկ ռեզինե սոսինձ ոչ մեկս չունի։

ՄԻՏՅԱ — Միշտ էլ այդպես է, հենց մի բան է լինում թե չէ, բոլորդ ինձ մոտ եք վազում՝ շտապում ենք, օգնիր։

ԳՐԻՇԿԱ — (Խնդրելով) Դե լավ, Միտյա, վերջին անգամ օգնիր։

ՄԻՏՅԱ — Լավ, թող այստեղ գնա՛, տղաներին ասա՝ ես գնդակը կնորոգեմ, թող հանգիստ լինեն, չեմ խաբի։ Առաջին անգամը չէ, որ ես օգնում եմ։

ԳՐԻՇԿԱ — Է՜խ, Միտյա, ձեռքերդ ոսկի են։ Մնաս բարով։ Ես վազեմ տղաներին հայտնեմ ու էլի կգամ։ (Գրիշկան վազելով դուրս է գալիս)։

ՄԻՏՅԱ — Տատիկ, գնդակը նորոգիր։

ՏԱՏԻԿ — Գնդա՞կ, ի՞նչ գնդակ։

ՄԻՏՅԱ — Հե՛չ, էս գնդակի մասին է խոսքը (ցույց է տալիս գնդակը)։

ՏԱՏԻԿ — Որտե՞ղ է ծակվել, ձագուկս։

ՄԻՏՅԱ — Ա՛յ, այստեղ, տեսնու՞մ ես։ Այստեղ կավիճով ցույց է տրված. փոքրիկ, շատ փոքրիկ անցք է, տեսնու՞մ ես։

ՏԱՏԻԿ — Տեսնում եմ, հո կույր չե՞մ։ Դե լավ։ (Փնթփնթում է)։ Այսօր կարթն եմ նորոգում, երեկ՝ ուռկանը, անցած շաբաթ՝ վոլեյբոլի ցանցը... Երկու օր չարչարվեցի, ամբողջ մատներս ծակծկվեցին։

ՄԻՏՅԱ — Դեհ, էս վերջին անգամն էլ, տատիկ ջան, էս վերջին անգամ, դու հո լսեցիր, որ Գրիշկային խոսք տվեցի։

ՏԱՏԻԿ — Դեհ, որ խոսք ես տվել, ուզած-չուզած պիտի անեմ։ Դո՛ւ, զավակս, մի րոպե մնա, իսկ ես անցքը կկարկատեմ։ (Տատիկը դուրս է գալիս, ներս է մտնում Գրիշկան)։

ԳՐԻՇԿԱ — (Շնչակտուր լինելով) Դեհ, ինչպե՞ս է, պատրա՞ստ է։

ՄԻՏՅԱ — Դու էլ զարմանալի մարդ ես, կարծես թե այդքան հեշտ բան է, մեկ, երկու, ու պրծավ գնաց։

ԳՐԻՇԿԱ — Դե լավ, Միտյա, մի՛ նեղանա։ Ես մի քիչ էլ կարող եմ սպասել։ Իսկ գիտես, հենց որ տղաներին ասացի, թե դու գնդակը նորոգելու ես, նրանք սկսեցին ձեռքերի վրա ինձ թռցնել, քիչ էր մնում շրմփոցով վայր ընկնեի գետնին։ Իսկ այս խնձորը խնդրեցին քեզ նվեր տալ։ Ա՛ռ, վերցրո՛ւ։



ՄԻՏՅԱ — Սա արդեն ավելորդ էր։

ԳՐԻՇԿԱ — Դե լա՛վ, վերցրո՛ւ։

ՄԻՏՅԱ — Որ այդքան ասում ես, տուր (Մի-

ցյան ուտում է խնձորը։ Ոտնաձայներ են լսվում։ Ներս է մտնում տատիկը)։

ՏԱՏԻԿ — Ա՛ռ, վերցրո՛ւ, Միտյա։

ՄԻՏՅԱ — Ընհը՛, ամեն ինչ կարգին է։ Վերցրու, Գրիշկա, ու ինձ շնորհակալություն հայտնիր։

ԳՐԻՇԿԱ — Հիմա մենք կփչենք, տեսնենք, հո օդ չի՞ թողնում։ Գիտես, շատ պատասխանատու խաղ է։

ՄԻՏՅԱ — Դե լավ, փչի՛ր։

Լսվում է, թե ինչպես է փքացնում գնդակը։

ԳՐԻՇԿԱ — (Շնչակտուր լինելով) Ինչ-որ չի փչվում։

ՄԻՏՅԱ — Է՛յ դու, անշնորհք, թող տեսնենք։ Ամեն ինչ արված է այնպես, ինչպես որ պետք է, հապա մի հեծանվի մխոցը բեր տեսնենք։

ԳՐԻՇԿԱ — Բռնի՛ր, իսկ ես կփչեմ։ Ինչ-որ կարգին չէ։ Տուր մի տեսնենք, կարկատանը լա՞վ է կպցրած։

ՄԻՏՅԱ — Դե, որ չես հավատում, առ տե՛ս։

Կարճատև լռություն։

ԳՐԻՇԿԱ — (Զայրացած ճչում է) Դու էս ի՞նչ ես արել, գնդակը ասեղ ու թելով ես կարկատել։ Քեզ համար սա շալվա՞ր է, ինչ է։

ՄԻՏՅԱ — Է՛հ, ես ի՞նչ անեմ, տատիկն է կարել, ես տեղյակ չեմ։

ԳՐԻՇԿԱ — (Ծաղրելով) Տատի՜կը, տատի՜կը, է՛յ, դու, ոսկի ձեռքեր... (արհամարհական) ոսկի ձեռքերը տատիկի ձեռքերն են, և ոչ թե քոնը։

*Թարգմ. Ռ. ՄՈՎՍԻՍՅԱՆ*



# Վերջին բալը



*ԱՐՇԱՎԻՐ ԴԱՐԲՆԻ*

Երկու ծիտիկ՝
Պստիկ-ճստիկ,
Մանրաթևիկ,
Մանրատոտիկ,
Գլուխ-գլխի
Կանգնած մոտիկ,
Ճվճվում են ու բարկանում,
Բայց իրար խոսք չեն հասկանում։
— Քեզ ասում եմ, որ սա բալ է։
Մի լավ նայիր՝ ինչքա՜ն ալ է։
— Չէ՜, կեռաս է։
— Չէ՜, բա՜լ է, բալ։
Եկ համը առ...—
Ծառի վրա՝ մի հատիկ բալ,
Որ փայլում է ուլունքի պես։
Ծիտը ծտին ճկճկում է.
— Արի պոկենք, անենք կես-կես,
Մի մասը՝ ինձ, մի մասը՝ քեզ։
— Համաձա՜յն եմ,
Արի, արի։
Հիմա վիզդ
Քիչ երկարիր,
Որ հեշտ պոկես...
— Իսկ ինչու՞ ես...
— Այ քեզ թամբա՜լ...—
Հանկարծ տեսան՝
Ո՛չ կեռաս կար, ո՛չ կարմիր բալ։
Մի խելոք ծիտ
Մոտեցել էր լուռ, կամացուկ,
Բալը պոկել, թևին տալով
Տարել ծածուկ։



*Նկ. ՍԵՅՐԱՆ ԽԱԹԼԱՄԱՋՅԱՆԻ*

# ՀԱՐԵՎԱՆԻ ՏՂԱՆ

ԼԻԱ ԲԱԼԱԳՅԱՆ

*Մայրիկն ու հայրիկը որոշեցին թատրոն գնալ։ Նրանց փոքրիկ տղայի հետ այդ երեկո համաձայնվեց մնալ հարևանի տղան՝ Գառնիկը։ Երբ մայրիկն ու հայրիկը գնացին, Կարենը նրանց հետևից այնպիսի գոռոց բարձրացրեց, այնպիսի մի աղաղակ, լաց ու կոծ, որ Գառնիկը գլուխը կորցրեց։*

*— Կարեն ջան, ի՞նչ ես ուզում, ինչի՞ ես լաց լինում,— հարցնում էր նա և մեկ գրքեր էր բերում, մեկ՝ խաղալիքներ։ Հետո փորձեց հեքիաթ պատմել, կոնֆետ տվեց, բայց ոչինչ չօգնեց։*

*— Տես, հիմա կրկես ցույց կտամ, միայն ձայնդ կտրիր, տե՛ս, Կարեն,— ասաց Գառնիկը և մի քանի անգամ գլուխկոնծի տվեց հատակին փռված գորգի վրա, հետո բարձերը սկսեց մինչև առաստաղ նետել և արագ-արագ բռնել, կարծես կրկեսում լիներ։*

*Բայց Կարենը շարունակում էր իր անտանելի լացը ու աչքի պոչով ուշադիր հետևում քրտինքի մեջ կորած Գառնիկին, որը նոր հնարներ էր որոնում։ Եվ որովհետև Գառնիկը այլևս չգիտեր ինչ անել, ճարը կտրած սկսեց «շալախո» պարել։ Եվ ա՛յ քեզ բան. Կարենը անմիջապես լռեց ու փոքրիկ քթիկը տնկած, փայլփլուն, սև, փոքրիկ աչքերով ուշադիր նայեց Գառնիկին։ Գառնիկը ոգևորված իր հաջողությունից, սկսեց ավելի արագ, ավելի եռանդով պարել։ Բայց շուտով նրա ուժերը սպառվեցին ու նա հոգնած կանգ առավ շունչ քաշելու։*

*Ըստ երևույթին, Կարենը զգաց, որ Գառնիկը վերջնականապես «գերի» դարձավ իր կամքին։ Հենց դադարեցնում էր պարը, Կարենն անմիջապես մարտական դիրք էր ընդունում և վերսկսում իր գոռոցը։ Գառ-*

## ՀԱՃԵԼԻ ԳՈՐԾ

ՄԱՐԻԱ ՄԻՐԶԱԲԵԿՈՎԱ

**— Ա՛յ թե ոնց ես չարչարանքս**
**Գետնով տալիս,**
**Ամբողջ օրը հողերի մեջ**
**Թրև գալիս։**

**Կեղտոտել ես դեռ չհագած**
**Քո նոր մայկան.**
**Ա՛խ, ի՛նչ ասեմ քեզ պես անկարգ,**
**Խենթ աղջկան...—**

**Եվ օճառն ու տաշտը ահա**
**Բերեց մամաս.**



նիկն ուժասպառ էր եղել, դեմքը կարմրել էր, քրտինքը ջրի նման հոսում էր երեսից, բայց նա պարում էր ու պարում... Եվ այդպես, նա պար եկավ ամբողջ երեկո, 4 ժամ շարունակ, մինչև ավարտվեց ներկայացումը և Կարենի մայրիկն ու հայրիկը տուն եկան։ Ամբողջ սենյակը տակնուվրա էր եղել, բարձերը թափթփված էին հատակին, աթոռները շուռ էին տըրված, գրքերն ու խաղալիքները ցրըված էին ամբողջ սենյակով մեկ։ Թախտին նստած էր Կարենը և բերանը բաց նայում էր Գառնիկին, որը պարում էր ու պարում, հևասպառ ու քրտնաթոր։

— Վա՜յ, հոգիս հանեց էդ Կարենը,— տեսնելով հայրիկին ու մայրիկին, հազիվհազ կարողացավ շշնջալ. Գառնիկը, հետո բերկրալից հայացքով նայեց դռանը ու հավաքելով վերջին ուժերը, դուրս վազեց։

— Դե շորերդ ի՛նքդ լվա,
Որ հասկանաս...—

Ես թևերս քշտում եմ ու
Գործի կպչում.
Նայու՜մ են ինձ ընկերներս
Ու նախանձում:

Օճառն է շուտ հալվում-դիզվում
Ձյունափրփուր.
Ու շորերս եմ հանում փռում
Մաքու՜ր-մաքու՜ր:

Լա՜վ է ազատ շրջել, խաղալ
Ամբողջ օրը
Ու սեփական ձեռքով լվալ
Հագիդ շորը:

Ա՛յ, կգնամ, կթավալվեմ
Ավազի մեջ
Ու հողերի հետ խաղ կանեմ
Նորից անվերջ:

Ընկերներիս կասեմ վրաս
Փոշի ցանեն,
Որ մայրս գա, ասի նորի՛ց
Լվացք անեմ:

*Թարգմ. Ս. ՄԿՐՏՉՅԱՆ*

# ԲԱՐԻ ՏԱՏԻԿ ԳՅՈՒԼՆԱԶԸ

*ԱՐԱՐԱՏ ԱՅՎԱԶՅԱՆ*



Բարկանում է մեր Կարոն
Տատի վրա համարձակ.
—Ես չեմ սիրում մակարոն՝
Երկար է ու մեջը ծակ:

Փլավը ետ է տանում
Տատը տխուր ու մոլոր:
—Ոսպախաշու չեմ սիրում՝
Ոսպերը շատ են կլոր:



— Կուզե՞ս բերեմ քեզ ապուր,—
Մրմնջում է տատը հեգ:
— Ես չեմ սիրում թանաջուր,
Պապիկի հետ վայելեք:

Գուցե ուտի խորոված:
Ու տատիկը հուսով է,
Թոռն է մնում խռոված.
— Սառեցրած մսո՞վ է:

Համբերությամբ է տանում
Քմահաճույքն ու նազը,
Ավելի է ծերանում
Բարի տատիկ Գյուլնազը:

*Նկ. ՀԱՅԿ ՏԵՐ-ՂԱԶԱՐՅԱՆԻ*



# ԵՐԵՄԸ

ՎԱՐՈՒԺԱՆ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ — Նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

Երեմը հագել էր գայլի դիմակը և բակ էր իջնում։ Հիմա բոլորին կվախեցնի, բոլորը կզգուշանան և կհարգեն. բավական է ինչքան փոքրի տեղ դրին։ Ինքը հիմա պարոն գայլն է։ Թող իրենց հավաք պահեն, ինչպես որ պետք է։ Տնեցիները չէին վախենում կամ միայն ձևացնում էին, հետո ծիծաղում։ Բայց տնեցիները հո գիտեն, որ իրենց Երեմն է. շուն է, գել է, էլի իրենցն է, չի ուտի, կխնայի։

Բակի երեխաները թող իրենց չերևակայեն։ Ինքը նրանց սանձերը կքաշի, մեծերին էլ, փոքրերին էլ։ Բայց եթե շատ վախենան, ինքը նրանց կմեղքանա, կհանի դիմակը և կասի. «Ես Երեմն եմ, դուք ողջ լինեք, խելոք մնացեք»։ Եվ նրանք ազատ շունչ կքաշեն և գոհ կլինեն, որ լավ պրծան։

Երեմը բակ դուրս եկավ։ Դիմակի անցքերի միջով լավ չէր տեսնում, աչքերը նեղվում էին, բայց և այնպես կարելի էր ընտելանալ։ Նրա տեսադաշտը նեղացել էր, և նա ստիպված էր լինում ստեպ-ստեպ գլուխը շրջել աջ ու ձախ իր զոհերը ջոկելու համար։

Առաջինը եղավ Մեսրոպը, հետո Նագիկը, հետո Կարլենը, հետո Վարդգեսը... Նա գոռում էր «ու՜հ-ու՜հ» և ատամները ծռում էր ճանկերի պես։

— Փախի՛ր էստեղից,— ասաց Մեսրոպը և մատը թափ տվեց։

— Փսլնքո՛տ,— ասաց Նագիկը և քրքջաց։

— Հա՛-հա՛... վախեցրիր, չէ՞ մի...— ասաց Կարլենը։

— Դիմակը տուր ես հագնեմ,— ասաց Վարդգեսը։

Ոչ մեկը չվախեցավ։ Չէին հավատում, որ ինքը գայլ է, և դա վշտացնում էր նրան։ Նույնիսկ հասակակիցները չէին ուզում ոչխարի դեր ստանձնել։ Գոնե ձևացնեին, որ վախենում են, ինքը շատ չէր բարկանա նրանց վրա։

Երեմը տեսավ իրեն հասակակից մի խումբ երեխաների, որոնք խաղում էին։ Դիմակը հանեց և մոտեցավ նայելու։

— Սագե՛ր, սագե՛ր, տուն եկեք... Գայլը սարի հետևն է։

— Մեզ ի՞նչ կանի։

— Ձեզ կուտի... Սև, սպիտակ, մոխրագույն, դե շուտ վազեք դեպի տուն։

Եվ երեխաները վազեցին «մայր սագի» մոտ։ Երեմը այդ խաղը գիտեր։ Ինքն էլ սագի ճուտ էր եղել։ Բայց հիմա ուզում էր դառնալ պարոն գայլ, որ իրենից վախենային։ Հիանալի միտք։ Հիմա նրանք չեն մերժի իր հետ խաղալ։

— Երեխեք,— ասաց նա,— ես էլ խաղամ։

— Դէ կանգնիր, – ասաց «մայր սագը»։

— Չէ, ես գայլ կխաղամ,— ասաց նա և ցույց տվեց դիմակը։ — Երբ դու ասես՝ ձեզ կուտի, ես կռռնամ, հետո դուք կշարունակեք...

— Այդպես չի լինի,— ասաց անհասկացող Նունիկը,— խաղի մեջ գայլ չկա. միայն անունն են տալիս։

— Լավ, նրա ասածի պես թող լինի,— ասաց «մայր սագը»,— ուզում է ոռնալ, թող ոռնա։

— Բայց սար չունենք, որ սարի հետևից ոռնա,— նորից առարկեց Նունիկը։

— Ոչինչ, թող ծառի հետևը կանգնի,— ասաց «մայր սագը», մոտակա ծառը ցույց տալով։

Երեմը ուրախացավ, դիմակը հագավ և թաքնվեց հաստ բնի հետևում։

Խաղը շարունակեցին։ Հենց որ «մայր սագն» ասում էր՝ ձեզ կուտի, Երեմը գայլային երախը ցույց էր տալիս ու ոռնում էր, «սագերն» էլ փախչում էին մայրիկի մոտ։ Երեմը ուրախ էր, որ վերջապես մի կերպ իրեն հաջողվում է վախեցնել։

Կամաց-կամաց բակի մյուս երեխաները հավաքվեցին Երեմ-գայլի շուրջը։ Հենց որ ոռնում էր, նրանք ծիծաղում էին։ Սկզբում դա նույնիսկ դուր էր գալիս Երեմին։ Քի՞չ էր կատակություններ անում, որ ծիծաղեցնի մանկապարտեզի երեխաներին։ Բայց նրանք ավելի մեծ էին, նրանց ծիծաղը ուրիշ տեսակ էր, անգամ նման չէր տնեցիների ծիծաղին։ Երեմն այդ նըկատեց, երբ արդեն սկսում էր ձանձրանալ ոռնալուց։ Դպրոցական Վաչեն, որն իր ուժով շատ էր հպարտանում, ծաղրանքով ասաց-նրան.

— Հյա մի հատ էքստրա ոռնա, է՛լի... ախպոր պես...

Երեմին շրջապատող երեխաները ծիծաղեցին, «սագերը» նույնպես։ Դա բոլորովին դուր չեկավ Երեմին, և նա իրեն զգում էր հիմար դրության մեջ։ Ոչ ոք չի սիրում գայլին։ Եթե նա իրոք վտանգավոր է, փախչում են կամ կրակում են նրա վրա, ինչպես ինքը տեսել էր կինոյում։ Իսկ եթե անճարակ է, ծիծաղում են։ Չէ, ոչ ոք գայլին չի սիրում։ Նա դիմակը պոկեց դեմքից և լաց լինելու չափ վիրավորված փախավ տուն՝ երեխաների ծաղրական ճիչերի տակ։





# ԵՍ ՆՐԱՆ ՏԻԳՐԱՆ ԵՄ ԱՍՈՒՄ

ԳԵՎՈՐԳ ԱՐՇԱԿՅԱՆ

Մի բակում ենք ապրում։ Տիգրանենք պատշգամբ ունեն, մենք չունենք, բոլորը գիտեն, որ պատշգամբը Տիգրանն է սարքել՝ հայրիկի հետ։ Նա գարնանը կանաչ է ներկում փայտե ճաղերը։ Ծառերի հետ կանաչում է նաև նրանց պատշգամբը։ Աշխարհում նրանց պատշգամբից գեղեցիկ պատշգամբ չկա։ Մենք բակում գնդակ ենք խաղում, մայրը նրան պատշգամբից է կանչում.

— Տիգո՛, արի...

Իմ մայրիկն էլ է ինձ կանչում.

— Արի՛, դասերդ մնացին...

Ոչ ոք Տիգրանին չի ասում. «Արի, դասերդ մնացին»։ Նրա հայրը երեկոյան աշխատանքից տուն վերադառնալիս ձայնում է.

— Տիգո՛, վազիր մի սառը ջուր բեր...

Երբ իմ հայրն է տուն գալիս աշխատանքից, դեռ չճաշած կանչում է ինձ.

— Տո՛ւն արի, դասերդ մնացին...

Ես ու Տիգրանը մի բակում ենք ապ-



Նկ. ՄԱՐՏԻՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

ՍՈՒՐԵՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ

## ՃԱՆԱՉՈՒ՞Մ ԵՔ ԴՈՒՔ ՆՐԱՆ

Մի ժամվա տեղ յոթ ժամ խաղում,
Չի հոգնում.
Յոթ օրվա մեջ մի օր մորը
Չի օգնում։
Լվացվում է երեք օրը
Մի անգամ.
Մեկ օրվա մեջ լաց է լինում
Վեց անգամ։
Երկու օրվա ճաշ է ուտում
Մեկ օրում.
Բայց մի դասը յոթ օրում է
Սովորում։



## ՄՐՋՅՈՒՆՆԵՐԻ ՍԵՂԱՆԸ

Մրջյունները անհամար
Սեղան գտան մի հարմար։
Երկար շարքեր կազմեցին,
Սունկի վրա բազմեցին։
Վա՜հ, այսպես էլ լավ սեղան,
Փոքրիկ է, մի ոտանի,
Բայց պահում է իր վրա
Մի մե՜ծ, շա՜տ մեծ ընտանիք։

րում։ Նրա մազերը սև են, խիտ՝ չեկ։ Մի անգամ մայրիկիս հարցրի.

— Տիգրանի մազերը ինչու՞ են սև։

— Նա գիշերն է ծնվել,— ասաց մայրըս,— դու՝ ցերեկը։

Ես այնքան էի ուզում, որ իմ մազերն էլ Տիգրանի մազերի նման սև լինեին։

— Ինչու՞ ես էլ գիշերը չեմ ծնվել։

Մայրս բարկացավ ու ասաց.

— Դասերդ մնացին, դասերդ…

Ես ու Տիգրանը միասին ենք գնում դպրոց։ Ուսուցիչը նրան կանչում է գրատախտակի մոտ։ Բարձիկը որքան էլ վերևում լինի գրված, նա կարողանում է վերցնել…

Ուսուցիչը նրան ասում է.

— Գրիր այն խնդիրը, որը տանը ոչ ոք չի կարողացել լուծել։

Տիգրանը շատ հեշտությամբ է «հինգեր» ստանում։ Մենք հեշտությամբ միայն «մեկ» կարող ենք ստանալ։ Ոչ մի դասատու նրա օրագրում «1», «2», «3» կամ «4» չի նշանակում։

Տատս գյուղից եկավ, Տիգրանի անվան կողքին մի ածական ավելացրեց. «Բոյով Տիգրան». Նա երկար հասակ ունի, ես՝ կարճ։ Տատս նրան կանչում էր, եթե դպրոցից վերադարձած էինք լինում.

— Բոյով Տիգրան, արի՛…— Նա վազում էր ու կանգնում տատիս մոտ։

— Լսում եմ, տատի։

— Ճագարներին բռնիր բեր լողացնենք,— ասում էր տատս։

— Ե՛ս բերեմ, տատի։

Տատս բարկանում էր.

— Գնա, դասերդ մնացին…

Տիգրանը վազում էր պարտեզ, թփերի ու խոտերի միջից բռնում ճագարներին և գրկած բերում։ Նրանք բակի ջրավազանում լողացնում էին փոքր ճագարներին ու մեկ-մեկ բաց թողնում։

— Ապրես, Տիգրան ջան,— ասում էր տատս։

Մի օր էլ ես կռվեցի Տիգրանի հետ։ Կաշվե գնդակով խփեցի նրան։ Ոչինչ չասաց։ Երկրորդ անգամ խփեցի։

— Մեր ճագարներին ձեռք չտաս…

Նա արցունքոտ աչքերով նայեց ինձ ու հեռացավ։

— Դպրոցում կտարածեմ, որ քո անունը Տիգո է. «Բոյով Տիգրա՞ն»,— կանչեցի նրա հետևից։

Նա չշրջվեց։ Կարծես նրա համար միևնույն էր «Տիգրան» կասեն իրեն, «Տիգո» թե «Բոյով Տիգրան»։ Գիշերը նրան տեսա երազում։

Երբ առավոտյան պայուսակս վերցնում էի, որ դուրս գամ, Տիգրանը վազեց մեր տուն։

— Հիվա՞նդ ես,— ասաց նա։

Ես լուռ էի։ Դպրոցի ճանապարհին նա ոչ մի բառ չասաց երեկվա կռվի մասին։ Աչքերս թացացան, չկարողացա նրան նայել։ Իսկ նա ինչ-որ բան էր պատմում և բարձր ծիծաղում։

Նկ. ՌՈԲԵՐՏ ԱՅՎԱԶՅԱՆԻ

Մենք ապրում ենք մի բակում. ես նրան ասում եմ՝ Տիգրան։

Աշխարհում նրանց պատշգամբից գեղեցիկ պատշգամբ չկա։

— Ոչ։ Ես գիտեմ, թե ուր եմ լողում, բոլորովին էլ չեմ մոլորվել։ Ես մի անգամ ևս ուզում եմ հաստատել, որ ծովում դեռ գոյություն ունեն կաթնասուններ, — պատասխանեց աղվեսը։— Ես լսել էի, թե բոլորին արդեն ոչնչացրել են։

— Սխալվում ես։ Այո, ծովում դեռ շատ կան կաթնասուններ, օրինակ՝ մենք, ծովացուլերը, կետերը և այլն, —պատասխանեց ծովաշունը։

Այստեղ աղվեսը մնաց զարմացած.

—Բայց ես չեմ հավատում, մինչև իմ սեփական աչքերով չտեսնեմ։ Հաստատ համոզվելու համար դուք բարձրացեք ջրի երես, ուղիղ շարվեք այնպես, որպեսզի ես ձեզ կարողանամ հաշվել,—դիմեց աղվեսը ծովաշանը։

Եվ այսպես բոլոր կաթնասունները բարձրացան ջրի երես և կողք—կողքի շարվեցին այնպես, որ շարքի մի ծայրը ծովի կենտրոնում էր, մյուս ծայրը ափ էր հասնում։

Աղվեսն ուրախացավ և ինքն իրեն ասաց. «Սրանք ինձ համար կամուրջ կլինեն, ես հանգիստ քայլելով ափ դուրս կգամ»։

Աղվեսը սկսեց նրանց վրայով քայլել և միաժամանակ հաշվել։

Ու աղվեսն իր խորամանկությամբ ափ դուրս եկավ։ Ափ դուրս գալուց հետո դիմեց միամիտ կաթնասուններին.

— Իսկապես, որ ծովում ձեզ նման հիմար կաթնասուններ շատ կան,



որոնցից կարելի է կամուրջ պատրաստել և ափ դուրս գալ։ Այժմ դուք ազատ եք, ուր ուզում եք գնացեք։

Աղվեսն արդեն իր կաշին փրկել էր։ Ծովի կենդանիները հեռացան, իսկ ինքն էլ ծովափին նստեց հանգստանալու։

Գերմաներենից թարգմ. ՍԱՐԳԻՍ ՍԱՐԳՍՅԱՆԸ



— Ոչ։ Ես գիտեմ, թե ուր եմ լողում, բոլորովին էլ չեմ մոլորվել։ Ես մի անգամ ևս ուզում եմ հաստատել, որ ծովում դեռ գոյություն ունեն կաթնասուններ, — պատասխանեց աղվեսը։ — Ես լսել էի, թե բոլորին արդեն ոչնչացրել են։

— Սխալվում ես։ Այո, ծովում դեռ շատ կան կաթնասուններ, օրինակ՝ մենք, ծովացուլերը, կետերը և այլն, — պատասխանեց ծովաշունը։

Այստեղ աղվեսը մնաց զարմացած.

— Բայց ես չեմ հավատում, մինչև իմ սեփական աչքերով չտեսնեմ։ Հաստատ համոզվելու համար դուք բարձրացեք ջրի երես, ուղիղ շարվեք այնպես, որպեսզի ես ձեզ կարողանամ հաշվել, — դիմեց աղվեսը ծովաշանը։

Եվ այսպես բոլոր կաթնասունները բարձրացան ջրի երես և կողք-կողքի շարվեցին այնպես, որ շարքի մի ծայրը ծովի կենտրոնում էր, մյուս ծայրը ափ էր հասնում։

Աղվեսն ուրախացավ և ինքն իրեն ասաց. «Սրանք ինձ համար կամուրջ կլինեն, ես հանգիստ քայլելով ափ դուրս կգամ»։

Աղվեսը սկսեց նրանց վրայով քայլել և միաժամանակ հաշվել։

Ու աղվեսն իր խորամանկությամբ ափ դուրս եկավ։ Ափ դուրս գալուց հետո դիմեց միամիտ կաթնասուններին.

— Իսկապես, որ ծովում ձեզ նման հիմար կաթնասուններ շատ կան,



որոնցից կարելի է կամուրջ պատրաստել և ափ դուրս գալ։ Այժմ դուք ազատ եք, ուր ուզում եք գնացեք։

Աղվեսն արդեն իր կաշին փրկել էր։ Ծովի կենդանիները հեռացան, իսկ ինքն էլ ծովափին նստեց հանգստանալու։

Գերմաներենից թարգմ. ՍԱՐԳԻՍ ՍԱՐԳՍՅԱՆԸ





# ՈՒՂՏՆ ՈՒ ԳԱՌԸ

ՊԱՏՎԱԿԱՆ
ԽԱՉԱՏՐՅԱՆ

Անտառի եզրին,
Մի մեծ բացատում,
Ուղտը կեսօրին
Փուշ-մուշ էր ուտում։
Տեսավ մի գառնուկ
Մայում է, լալիս,
Գայլից լեղաճաք
Իրեն է գալիս։
— Քեռի ջան, քեռի՜,—
Ձայն տվեց հեռվից,—
Մի հնար արա,
Գնում եմ ձեռից։—
Ուղտն արագ-արագ
Ջոր փուշը պոկեց
Եվ գառան դիմաց
Մարդու պես չոքեց.
— Թռիր շուտ մեջքիս
Լեռներից մեկին,—
Ասաց ու տեղից
Բարձրացավ կրկին։
Դե, գայլը ցածում
Թող փրփրոտի,
Էլ ամպին հասած
Գառը ո՞նց ուտի։

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ